


## ԳԻՏԵ՞Ք ՈՐ...

Ինչպես հայտնի է, 1977—1978 թվականի տարեմուտին տիեզերագնացներ Ռոմանենկոն և Գրեչկոն գտնվում էին տիեզերանավում և այնտեղ էլ դիմավորեցին նոր տարին: Ի՞նչ կա որ: Բանը նրանումն է, որ երկրագնդի բնակիչները որտեղ էլ որ գտնվելիս լինեն, տեղական ժամանակով մի անգամ են դիմավորում նոր տարին, իսկ տիեզերանավում ուրիշ է, և մեր տիեզերագնացներն այդ տարեմուտին 15 անգամ դիմավորեցին նոր տարին և նորից «ընկան» 1977 թվականը և վերջապես 16-րդ անգամ, նոր տարին դիմավորեցին Մոսկվայի ժամանակով և Մի–Կի պարկուճ տոնուս բարձրացնող խմիչքով շնորհավորեցին նրա գալուստը:

# ԱՐԾԱԹԵ ԶԱՆԳԱԿՆԵՐ

ԱՆՏՈՆ ՆԻԿՈԼՈՎ

Հինգերորդ դասարանցիները որոշեցին պատրաստել Նոր տարվա տոնական համերգ և հրավիրել ծնողներին:

— Ո՞վ կարող է երգել, պարել կամ որևէ գործիք նվագել, թող ձեռք բարձրացնի,— ասաց ուսուցչուհին:

Առաջին նստարանից բարձրացավ Իրինան:

— Գիտեմ, որ դու երաժիշտ ես,— ուսուցչուհին մոտեցավ նրան.— ի՞նչ կնվագես:

— «Խաբաներա»՝ Ժորժ Բիզեի «Կարմեն» օպերայից,— հպարտ վրա բերեց Իրինան:

— Իսկ «Կարապի լճի՞ց»:

— «Փոքրիկ կարապների պարը»:

— Կնվագե՞ս:

— Ուրախությամբ.— գլխով արեց Իրինան:

Վերջին նստարանին նստած Սլավեյկոն տեղում անհանգիստ շարժվեց, հիշելով անցյալ դպրոցական համերգը:

Այն ժամանակ էլ Իրինան բեմ բարձրացավ, գլուխ տվեց, ապա նստեց դաշնամուրի առաջ, և նրա ձեռքերը թռչնակների պես սկսեցին թռչկոտել ստեղների վրա, հնչյունները մեկ թափվում, մեկ թռչում էին, ասես թռչնիկները չէին թռչում, այլ պարում էին, մեկ շարվելով կողք-կողքի, մեկ հեռանալով, թևիկների հագիվ նկատելի թրթռոցով:



«Դժվա՞ր է նվագելը».— Սլավեյկոն հարցրել էր Իրինային: «Շա՛տ»,— ասել էր նա, բացահայտ գերազանցության զգացումով նայելով Սլավեյկոյին: Նրա դեմքի արտահայտությունը կարծես հենց այդպես էլ ասում էր՝ «Երաժշտությունը քո բանը չի»:

— Հայրի՛կ, երաժիշտ դառնալը դժվա՞ր է,— տուն գնալով, Սլավեյկոն հարցրել էր հորը:

— Սովորական երաժըշտի համար դժվարը գործիքին տիրապետելն է,— քիչ մտածելով ասել էր հայրը,— իսկ մեծ երաժշտի համար դժվարությունն սկսվում է դրանից հետո:

— Իսկ ես կարո՞ղ եմ սովորել:

— Նախ և առաջ, ամեն մի զբաղմունք, ամեն մի գործ, պահանջում է հրապուրվել,— լրջորեն, ինչպես մեծին, ասել էր հայրը,— իսկ երաժշտությունը առավել ևս: Պետք է ունենալ ռիթմի զգացողություն, լսողություն:

— Լսելը՝ ես լավ եմ լսում,— հորն անհամբեր ընդհատել էր Սլավեյկոն:

— Հատուկ լսողություն է պետք՝ երաժշտական մի տոնը մյուսից տարբերելու համար: Եվ ապա, եթե որոշես դառնալ երաժիշտ, պետք է կարողանաս երաժշտությունը նաև տեսնել:

— Հա՛, հա՛, հա՛,— քրքջացել էր տղան,— մի՞թե երաժշտությունը կարելի է տեսնել:

Գարնանային արձակուրդներին նա հոր հետ գյուղ գնաց: Հայրը կըտրեց ծեր ակացիան և պատրաստեց քսիլոֆոն: Սլավեյկոն մոռացավ թե՛ խաղ, թե՛ հեծանիվ, թե՛ կինո: Առավոտները սովորածը երեկոները կրկնում, ամրապնդում էր իր մեջ: Իսկ առավոտները մի բուռ ջուր տալով երեսին, նստում և սկսում էր նոր վարժություն սովորել «Երաժշտական դպրոց» ժողովածուից:

Երբ եկավ ժամանակն ու նա հասավ վերջին էջին, նրան շատ դուր եկավ երաժշտական փոքրիկ պիեսի «Արծաթե զանգակներ» անունը:

— Ես էլ կարող եմ նըվագել...— ոչ բարձր ասաց Սլավեյկոն, տեղից



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

բարձրանալով:

Իրինան իսկույն շրջվեց նրա կողմը:

— Դաշնամուրի՞, թե՞ ակորդեոնի վրա,— քրմծիծաղ տվեց նա:

— Քսիլոֆոնի:

— Սաքսոֆոնի,— ուղղեց Իրինան:

— Քսիլոֆոնի վրա,— բարկացավ Սլավեյկոն, նա չէր կարծում, թե Իրինան չգիտի,— սաքսոֆոնը փողային գործիք է, իսկ քսիլոֆոնը՝ հարվածային: Ինձ համար հայրս է պատրաստել:

— Հա՞յրդ,— փոքկաց Իրինան:

— Այո՛, ակացիայի ծառից, բունը բարակ շերտով սղոցեց: Երկարը ավելի ցածր տոն է ունենում, կարճը՝ բարձր: Հարվածում են ձողիկներով և...

Իրինան երեսը դարձրեց:

— Իսկ ծա՞նր է քո այդ քսիլոֆոնը,— հարցրեց ուսուցչուհին,— կարո՞ղ ես բերել:

— Կարող եմ,— փայլեց Սլավեյկոն, պատկերացնելով, թե ինչպես է նվագելու «Արծաթե զանգակներ» պիեսը: Եվ եթե որևէ մեկը հարցներ նրան, թե դժվա՞ր է երաժիշտ դառնալը, Սլավեյկոն կժպտար ու կասեր՝ «դժվար է, բայց եթե ուզենաս ու համառես...»:



# ԴՊՐՈՑԱԿԱՆ ԴԻՍԿՈՏԵԿԱ

Երևանի երիտասարդական պալատում կա գունագեղ լուսավորված, ուշագրավ մի սրահ: Այստեղ հավաքվում, հանգստանում, հաճելի ժամանակ են անցկացնում տարբեր տարիքի մարդիկ: Երգում են, պարում, երաժշտական ծրագրեր լսում, վայելում թեթև խորտիկներ, ըմպում հյութեր, հաճելի ժամանակ անցկացնում: Այդ էլ կոչվում է դիսկոտեկա:

«Դիսկոտեկան» օտարամուտ բառ է, «դիսկ» նշանակում է սկավառակ, միայն ոչ մարզական, այլ՝ երաժշտական:

Անցած տարվա գարնանային արձակուրդներին ՀԼԿԵՄ Կենտկոմի նախաձեռնությամբ այստեղ կազմվեց դիսկոտեկա նաև դպրոցականների համար: Սրահի առաջին հյուրերը տարբեր դպրոցների աշակերտներ էին, որոնք ապացուցեցին, որ ոչ միայն արժանի այցելուներ են, այլև երաժշտական ծրագրի տարբեր համարների ակտիվ մասնակից: Ծրագրավարը, կամ ինչպես ընդունված է ասել՝ ժոկեյը հիացած էր նրանցով ու նաև զարմացած, որ 4—5-րդ դասարանցիները կարող են այդքան շատ, այդպես լավ ուրախանալ: Այժմ ամիսը մեկ-երկու անգամ, ցանկանալու դեպքում ավելի հաճախակի, պալատում կազմակերպվում է դպրոցական դիսկոտեկա:

Այստեղ բացի երգ ու երաժշտությունից, ժոկեյի զվարճալի արարքներից, դպրոցականներին նաև անակնկալներ են սպասում: Հանկարծ կարող է դուռը բացվել և ներս մտնել... մանկական երգերի, բանաստեղծությունների հայ և այլազգի հեղինակ, վարպետ կատարող, կրկեսի ու կինոյի արտիստ, և ցերեկույթը կշարունակվի նոր ոգևորությամբ: Միայն թե յուրաքանչյուր ցերեկույթ չպետք է անցնի երեք ժամից՝ դա էլ դիսկոտեկայի օրենքներից մեկն է: Ահա թե ինչու, բոլորն էլ ափսոսանքով են հեռանում պալատից և երազում նորից այցի գալ և երեք ժամ պարել երգի ու երաժշտության, հրճվանքի ու ծիծաղի մթնոլորտում:




# ՄԵՆՔ ԵՎ ՄԵՐ ՀՈՂԸ

կողքին աշխատում էին եռուն օրերին ավագների

Ամռանը բերքահավաքի մեր դպրոցի աշակերտական-արտադրական բրիգադի անդամները:

Աղջիկները հիմնականում օգնում էին ծխախոտի տերևաքաղին ու շարին: Մինչ այդ նրանք մոշակել էին 5—6 հեկտար ծխախոտ: Այժմ նրանց երգը գալիս էր չորանոցներից: Բրիգադի անդամներ Սվետլանան, Անահիտը, Էլմիրան, Զարուհին և ուրիշներ օրական քաղում և շարում էին 70—80 կգ ծխախոտ:

Բրիգադի անդամները մասնակցեցին նաև խոտի հավաքմանը: Նրանք պարտավորվել էին կուտակել 500 տոննա խոտ և կատարեցին իրենց խոստումը: Բրիգադավարներ Գ. Քարամյանը և Ա. Զադոյանը գոհ մնացին դպրոցականների կատարած աշխատանքից:

Այսպես ահա յուրաքանչյուր տարվա աշխատանքային 5-րդ քառորդում մեր դպրոցի աշակերտական—արտադրական բրիգադի կենսագրությանը ավելանում է աշխատանքային նոր էջ:

ՄԱՐԻՆԵ ԲԱԿՈՒՆՑ

*Գորիսի շրջանի Վերիշենի դպրոցի աշակերտուհի*

# ՄՐՑՈՒՅԹ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

Մայրենի լեզվով ավելի ճիշտ ու գրագետ խոսելու նպատակով հայրիկիս և մայրիկիս նախաձեռնությամբ արդեն մի քանի ամիս է մրցույթ է սկսվել իմ և եղբայրներիս՝ Փայլակի ու Գարիկի միջև: Մրցույթի խորագիրն է՝ «Եկեք խոսենք հայերեն»:

Օրվա ընթացքում յուրաքանչյուրս ուշիմ հետևում է մյուսների խոսակցությանը: Եթե որևէ մեկը սխալ է թույլ տալիս, այսինքն՝ չի խոսում ճիշտ ու գրական հայերենով, մենք գրի ենք առնում սխալները: Ամսվա վերջում ով ավելի քիչ սխալ է կատարած լինում, նվեր է ստանում՝ գիրք, գրենական պիտույք և այլն:

Այդ մրցույթը շատ հետաքրքիր ու աշխույժ է դարձել մեր տան առօրյան և շատ է օգնում խուսափել անփույթ, տգեղ խոսվածքից:

Ես և եղբայրներս մեր կազմակերպած մրցույթի մասին պատմել ենք մեր բոլոր հասակակիցներին: Նրանք էլ իրենց ընտանիքներում են սկսել նման մրցույթներ:

ԳԱՅԱՆԵ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Երևան, № 170 դպր., 9-րդ դաս.*



# ՕԴԱՆԱՎԱ-ԿԱՅԱՆԻ ՆՈՐ ՀԱՄԱԼԻՐԸ

*Լուսանկարները՝*
*ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ*

Մեզ հայտնի բոլոր օդանավակայանների շենքից մինչև ինքնաթիռ բավականին տարածություն է լինում, երբեմն այնքան երկար, որ հաճախ ավտոբուսով են մոտենում ինքնաթիռին: Իսկ ահա Երևանի Հարավային օդանավակայանում նոր համալիր է կառուցվել, որտեղ ինքնաթիռն է մոտենում օդանավակայանի սրահին:

Առայժմ միանգամից վեց ինքնաթիռ կարող է այս ձևով սպասարկել առաջին հերթը, իսկ երկրորդ հերթը շահագործման հանձնվելուց հետո՝ կսպասարկվի 14-ը, ժամում ճանապարհելով 2100 ուղևոր:

Համալիրը կազմված է երկու շրջանաձև մասնաշենքերից: Ներսի մասնաշենքի կենտրոնից վեր է խոյացել երկաթբետոնե սնամեջ մի սյուն, որի կատարին երթակարգավորման կետն է, իսկ տակը բավականին ընդարձակ ռեստորանը, որտեղից դիտողին Արարատյան դաշտավայրը, Երևանը և շըրջակա լեռնաշղթաներն ու լեռները կերևան ինչպես ափի մեջ:

Տարեվերջին, երբ համալիրը ամբողջովին հանձնվի շահագործման, բացի ռեստորանից, կգործեն կենցաղսպասարկման, սննդի տասնյակ կետեր, հարմարավետ ու ընդարձակ սպասասրահ, մոր և մանկան, հանգստի բաժիններ, և բոլորն էլ՝ ընտիր կահավորմամբ: Օդանավակայանի հին շենքը, վերակառուցվելուց հետո, դառնալու է միջազգային, որտեղ վայրէջք կկատարեն արտասահմանյան տարբեր երկըրների ինքնաթիռներ:



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 33. ԿԱՐԵԼԻ Է ԱՍԵԼ՝ «...ԳՈՐԾՆ ԱՅՆՔԱՆ ԲԱՐԴԱՑԱՎ, ՈՐ ՀԱՍԱՎ ՎԵՐԱԴԱՍԻՆ», ԿԱՐԵԼԻ Է ԱՍԵԼ ՆԱԵՎ՝ «...ԲԱՆԸ ՀԱՍԱՎ ԴԻՎԱՆԲԱՇՈՒՆ». Ո՞ՐՆ Է ԱՎԵԼԻ ՏՊԱՎՈՐԻՉ, ԿԱՄ ԹԵՎԱՎՈՐ ԽՈՍՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Կարծում եմ, որ բոլորդ էլ կպատասխանեք՝ իհարկե, երկրորդը: Ինչու՞: Որովհետև երկրորդն ավելի վառ է, ցայտուն, համով-հոտով, մի խոսքով՝ ավելի ազդեցիկ, ուստի և տեղ է հասնում խիկույն ևեթ: Հենց այդ պատճառով էլ նրման դարձվածքները կոչվում են ԹԵՎԱՎՈՐ ԽՈՍՔԵՐ:

Դեռ Հոմերոսն է, մեր թվագրությունից դարեր առաջ, այդպես կոչել այսօրինակ դարձվածքները, որոնք, խոսողի շուրթերից պոկվելով, անմիջապես և անվերապահ արձագանք են գտել ունկնդիրների մեջ:

Թևավոր խոսքը կրում է իմաստային ավելի մեծ բեռ, քան բառեր է պարունակում իր մեջ: Եվ շուտ է տեղ հասնում, քանի որ լսողն արդեն իսկ պատրաստ է դրա ընկալմանը:

Բերենք մեկ ուրիշ օրինակ: Մեկը պատմում է, թե ինչ խառնաշփոթ վիճակի մեջ է հայտնվել. «մի խոսքով՝ բաբելոնյան աշտարակաշինություն»,— ասում է նա, և պատկերը միանգամից տպավորիչ է դառնում: Իհարկե, նրա՛նց համար, ովքեր ծանոթ են բիբլիական առասպելին, թե ինչպես մի ժամանակ Բաբելոնում փորձել են մինչև երկինք հասնող մի աշտարակ կառուցել, բայց աստված զայրացել ու խափանել է գործը՝ մարդկանց լեզուները խառնելով. կառուցողներն այլևս չեն հասկացել միմյանց և ստիպված ձեռ են քաշել իրենց նպատակից:

«Բաբելոնյան աշտարակաշինություն» ասելու փոխարեն կարելի է ասել նաև՝ «շունը տիրոջը չէր ճանաչում», և պատկերը կլինի նույնքան տպավորիչ: Այնպես որ՝ ժողովրդական ասացվածքը նույն նպատակին ծառայում է ոչ պակաս հաջողությամբ: Ուրեմն, ի՞նչ տարբերություն: Ոչ մի: Տարբերությունը դրանց ծագումն է միայն. թևավոր խոսքերը ժողովրդական բառ ու բանի ծնունդ չեն, ինչպես ասացվածքները, թևավոր խոսքերն ունեն գրական կամ պատմական ծագում, առնված են գրական երկերից կամ կապված են պատմական անձերի ու եղելությունների հետ:

Ասենք, «առյուծի բաժին» արտահայտությունը գալիս է Եզովպոսի առակից, «առատության եղջյուրը»՝ հունական դիցաբանությունից, «վիճակը գցված է» դարձվածքը Հուլիոս Կեսարն է ասել վճռական մի պահի՝ իր զորքերի հետ Ռուբիկոն գետն անցնելիս, «լինե՞լ, թե չլինել, այս է խնդիրը»՝ սա շեքսպիրյան Համլետի մենախոսության առաջին տողն է, «Ոչնչից մեծ աղմուկ»՝ այսպես կոչվում է Շեքսպիրի կոմեդիաներից

մեկը, «աչքի լույսի պես պահել», «քամի ցանողը փոթորիկ կհնձի», «սրբություն սրբոց», «ձախ ձեռքը չգիտի, թե ինչ է անում աջը», «Նոյի ագռավը», «Սոդոմ-Գոմոր», «Սողոմոնի դատ» և շատ ուրիշ արտահայտություններ գալիս են Աստվածաշնչից:

Այսօրինակ թևավոր խոսքերն ունեն միջազգային բնույթ, դրանք բոլոր ժողովուրդները հասկանում են: Բայց շատ և շատ թևավոր խոսքեր էլ ունեն ազգային բնույթ, դրանք բխում են տվյալ ժողովրդի պատմությունից ու գրականությունից և մտնում այդ ժողովրդի արտահայտչական միջոցների զինանոցը:

Հայոց պատմությունը և, մանավանդ, գրականությունը, մեզ տվել են մեծ թըվով իմաստալից թևավոր խոսքեր, որոնք ևս պետք է իմանալ ու մտքում պահել: «Չհասկացված մահը մահ է, հասկացված մահը՝ անմահություն», «լավ է աչքով կույր լինել, քան մտքով» դարձվածքները կյանք են մտել 5-րդ դարի պատմիչ Եղիշեի «Վարդանի և հայոց պատերազմի մասին» գրքից, «Ողբամ զքեզ հայոց աշխարհ, զի բազավոր քո մանուկ է» դարձվածքը գործ է ածել պատմահայր Մովսես Խորենացին «Հայոց պատմություն» գրքում, նույն գրքից է առնված «քաջերի սահմանն իրենց զենքն է» դարձվածքը, որ գործ ենք ածում, երբ ուզում ենք ասել, թե մարդու նվաճումների չափն իր զորությունն է որոշում:

Մեր գրականությանը դառնանք: Խաչատուր Աբովյանից է գալիս «Պարապ վախտի խաղալիք»-ը, Միքայել Նալբանդյանից՝ «Կեցցե կառուն, որ յուր փորի համար մուկ է բռնում», —Դերենիկ Դեմիրճյանից՝ «Պրծա՛վ, էլ Նազարը կռիվ չի գնա» և ուրիշ գրողների ուրիշ արտահայտություններ: Բայց ամենից շատ հայ խոսակցական լեզուն Թումանյանից առնված թևավոր խոսքերով է հարուստ:

Ամեն մի զարգացած գրականության մեջ լինում է մի գրող, որի ստեղծագործությունն ամենից շատ, ամենից լավ, ամենից կատարյալ արվեստով է խըտացնում տվյալ ժողովրդի կենսափորձը և պատմական դարավոր փորձը: Ուստի և նրանց ստեղծագործությունն է դառնում այդ ժողովրդի թևավոր խոսքերի հորդառատ ակունքը: Անգլիացիների այդ գրողը Շեքսպիրն է, ռուսներինը՝ Պուշկինը, գերմանացիներինը՝ Գյոթեն: Հայերինս՝ Թումանյանն է: Նրա հանճարեղ ստեղծագործությունը հայ մարդուն թևավոր խոսքեր է տալիս անսովոր առատությամբ, և դրանք պետք են գալիս կյանքի բոլոր պարագաներում: «Ապրե՛ք, երեխե՛ք, բայց մեզ պես չապրեք», «Գո՛րծն է անմահ, լա՛վ իմացեք», «Սարն ամենքի՛ս է հավասար», «Օրեր են, կմթնեն, անց կկենան», «Բալը թանկ է, հարկավոր չի», «Դե ձեր մեռելն եկեք տարեք», «Մենք ամենքս հյուր ենք կյանքում», «Մահը մերն է, մենք մահինը»— Թումանյանի տարբեր երկերից առնված այս և ուրիշ դարձվածքներ դարձել են թևավոր խոսքեր և մշտապես թևածում են մեր շուրջը:

Ի՞նչն է այդպիսի զորություն տալիս ընդամենը մի քանի բառից բաղկացած այդ խոսքերին: Ե՛վ այն, որ դրանք մըտքի փայլուն խտացումներ են՝ քիչ բառով մեծ իմաստ են արտահայտում, և՛ այն, որ դրանք խորապես հարազատ են հայ մարդու լեզվամտածողությանը, և՛ այն, որ համ ու հոտ ունեն, գեղեցիկ են ու հրապուրիչ:

Թևավոր խոսքերի շարքն են դասվում նաև այնպիսի հատուկ անուններ, որոնք

որոշակի բնավորություն են ներկայացնում։ Իսկապես, չէ՞ որ Օթելլո ասելով մենք հասկանում ենք չափից դուրս խանդոտ, իսկ Յագո ասելով՝ նույնքան նենգամիտ մարդ, Դոն Կիխոտն ընկալում ենք որպես կյանքի իրական հանգամանքները չտեսնող, Յանուսը՝ երկդիմի մարդու, Հուդան՝ դավաճանի, Քաջ Նազարը՝ բախտի բերմամբ դիրքի հասած մարդու, Վասակը՝ հայրենիքի դավաճանի, Խլեստակովը՝ պարծենկոտի, Չախորդ Փանոսը՝ ամեն քայլափոխի անհաջողության մատնվող մարդու խորհրդանիշ։ Հասարակ անուններ դարձած հատուկ անունների այս շարքը, որ դուք հեշտությամբ կարող եք ավելացնել, ցույց է տալիս, թե դրանք ինչպես կարող են կենդանի ու պատկերավոր դարձնել մեր խոսքը։

Իհարկե, թևավոր խոսքերի մասին ամեն ինչ չասացինք և հնարավոր էլ չէ ասել մի զրույցում։ Խորհուրդ կտայինք ձեռք բերել կամ գրադարանից վերցնել ու կարդալ Ռ. Իշխանյանի կազմած «Թևավոր խոսքեր», Հ. Կնյազյանի կազմած «Հետաքրքիր, իմաստալի աշխարհ» գրքերը։ Դրանց մեջ դուք թևավոր խոսքերի շատ գրավիչ օրինակներ կգտնեք, որոնք և՛ կհարստացնեն ձեր լեզուն, և՛ կծանոթացնեն պատմության բազմաթիվ դրվագների։

Մի բան պետք է հաստատ իմանալ՝ թևավոր խոսքերը կայուն բառակապակցություններ են, դրանք չի կարելի ձևափոխել, առավել ևս՝ խեղաթյուրել, այլ պետք է գործի դնել այնպես, ինչպես կան։ Բայց սա վերաբերում է մյուս կարգի դարձվածքներին ևս, առհասարակ՝ բոլոր դարձվածքներին։

Հենց դրանց էլ նվիրված կլինի մեր հաջորդ զրույցը։

# ԿՈՎԱԽՆՁՈՐ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Նոր տարվա օրը, երբ բոլորը բոլորին նվերներ էին անում, Հորեղբայր Անտոնը նորից մի անսպասելի խաղ խաղաց՝ մի խաղալիք ատրճանակ բերեց, այն էլ նվիրեց Կարինեին և ասաց.

— Ատրճանակը, իհարկե, աղջկա խաղալիք չի։ Տալիս եմ քեզ, որ դու նվիրես ում ուզում ես։

Հորեղբայրը «կովախնձոր» էր բերել։

Ասաց ու գնաց, թողնելով Կարինեին լուրջ խնդրի առաջ։ Խաղալիք ատրճանակը հայրիկին պետք չէր։ Մնացին եղբայրները՝ Պետրոսը և Մարտիրոսը։ Մեկը կամ մյուսը։ Մայրիկը, որը ընտանեկան փոթորիկներ չէր սիրում, հայրիկին կտրուկ ասաց.

— Որտեղից կուզես՝ ճարի՛ր մի այսպիսի ատրճանակ։ Թող տղաներից ոչ մեկը չտուժի։ Քո այդ եղբայր Անտոնի օյիններից մինչև այստեղ կշտացել եմ։

Այդ «այստեղ»-ը կոկորդն էր, որ մայրիկը ցույց տվեց ձեռքի հորիզոնական շարժումով։

— Այդպես հետաքրքիր չի լինի,— առարկեց հայրը,— թողնենք երեխաներին, տեսնենք նրանք հարցն ինչպես կլուծեն։

— Տուր ի՛նձ,— ասաց Պետրոսը Կարինեին,— ես քո մեծ եղբայրն եմ։

— Տուր ի՛նձ,— ասաց

Մարտիրոսը,— Պետրոսն արդեն մեծ է։

— Ես նվերներն ավելի խնամքով եմ պահում,— հիշեցրեց Պետրոսը։

— Ես խոստանում եմ ատրճանակը անվնաս պահել մինչև կյանքիս վերջը,— երդվեց Մարտիրոսը։

— Տուր ի՛նձ,— մայրը ձեռքը պարզեց,— ես հիմա դա լուսամուտից դուրս կշպրտեմ։

Հայրը նորից միջամտեց։

— Կարինե՛, ի՛նքդ որոշիր, բալի՛կս։

Եվ Կարինեն, նեղն ընկած, ասաց մեծերից լըսածի պես.

— Ժամանա՛կ տվեք, մտածեմ։

Հայրը պառկեց բազմոցին, բացեց կիսատ գիրքը։ Պետրոսը իջավ բակ և միացավ ձնեմարդ պատրաստող հասակակիցներին։ Մարտիրոսը սահնակը ցած իջեցրեց և գնաց խաղալու ավելի փոքրերի հետ։ Իսկ Կարինեն մնաց ատրճանակի և իր մտքերի հետ։

—Հը՞, ի՞նչ որոշեցիր,— երեկոյան, ընթրիքի սեղանի շուրջը հետաքըրքըրվեց հայրը։

— Դեռ ոչ մի բան,— պատասխանեց Կարինեն։

— Լավ, մինչև վաղն էլ մտածի՛ր,— առաջարկեց հայրը։

Ատրճանակը թե՛ Պետրոսի, թե՛ Մարտիրոսի համար մի այլ, ավելի կարևոր նշանակություն ևս ստացավ. եղբայրներից ում ավելի շատ է սիրում քույրը, նրան էլ կընվիրի։

Հետևյալ օրը ճաշին հորեղբայր Անտոնը եկավ։ Բոլորն սպասում էին, որ կհետաքրքրվի, թե ում բաժին ընկավ ատրճանակը։ Բայց հորեղբայր Անտոնն ամեն ինչի մասին խոսում էր, բացի ատրճանակից։ Հայրը, մայրը, Կարինեն ու եղբայրները նույնպես ձևացան, թե ոչ մի ատրճանակի հարց էլ չկա։

Երեկոյան, երբ հորեղբայր Անտոնը հրաժեշտ տվեց նրանց և իջնում էր սանդուղքով, իսկ բնակարանի դուռն արդեն փակվել էր իր ետևից, նա ներսից լսեց Կարինեի ծիծաղը։ Հորեղբայրն այդ ծիծաղը հասկացավ, երբ ձեռքը տարավ գրպանը. ինչպե՞ս էր Կարինեն ատրճանակը սահեցրել իր գրպանը, որ ինքը չէր նկատել։

Հորեղբայրը ժպտաց և ուրախ-ուրախ շարունակեց ճանապարհը։

Նա գոհ էր հարցի լուծումից, նույնքան որքան գոհ մնացին Կարինեի հայրը, մայրը և եղբայրները։



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ





# ՄԵՐ ՆԱԽՆԻՆԵՐԻ ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԱՂՅՈՒՍԱԿԸ

Գարնանային առավոտ էր: Արարատյան դաշտից Երևան մտավ մի մեծ ավտոմեքենա և սլացավ դեպի Մատենադարան: Պիոներները իջան մեքենայից ու աստիճաններով բարձրացան վերև:

Ահա և Մեսրոպ Մաշտոցն՝ իր աշակերտ Կորյունի հետ: Աստղիկն ու Նորայրը դաշտերից հավաքած գույնզգույն ծաղիկների մեծ փունջը տարան դրեցին նրանց արձանների պատվանդանին ու շարունակեցին բարձրանալ վերև:

Շենքի մուտքից ներս անցնելիս պիոներները զարմանքով տեսան իրենց ոտքերի տակ, ցեմենտի մեջ ամրացված չորս փայլուն ու գեղեցիկ տառեր. «ՌՋՃԷ»: Կարդացին, բայց ոչ ոք չիմացավ, թե ինչ են նշանակում դրանք:

Վերևում ցուցասրահն էր: Այստեղ, մուտքի մոտ նրանց դիմավորեց մի երիտասարդ կին և ժպտալով ասաց.

— Բարով եք եկել, սիրելի՛ պիոներներ, ես ընկեր Արևիկն եմ:

Ապա նա բոլորին առաջնորդեց ներս և սկսեց իր բացատրությունները: Ցուցափեղկից ցուցափեղկ՝ գիտելիքների մի ուրիշ աշխարհ էր: Ինչքա՜ն նոր բան տեսան ու իմացան նրանք այդտեղ: «Ձեռագիր», «Մագաղաթ», «Գրիչ», «Ծաղկող», «Մանրանկարիչ», «Կրկնագիր», «Խորան», «Տաղ», «Շարական», «Խազ», «Դեղաբույսեր», «Ներկաբույսեր», «Ձեռագրերի գերություն», «Գաղթ», «Կոտորած», «Մշո ճառընտիր», «Սայաթ-Նովայի ինքնագիր» և այլն, և այլն:

— Սրանք էլ մեր նախնիների թվաբանական գործողությունների աղյուսակ-տախտակներն են:

Գարեգինը հիշեց ներքևում տեսած տառերը և հարց տվեց նրանց մասին:

— Դրանք,— ասաց ընկեր Արևիկը,— տարեթվի



Անանիա Շիրակացու աշխատությունները (VII դար)

իմաստ ունեն: Ռ-ն հավասար է 1000-ի, Ջ-ն՝ 900-ի, Ծ-ն՝ 50-ի, իսկ Է-ն՝ 7-ի: Հապա ասացեք, ինչքա՞ն կլինի բոլորը:

— 1957,— պատասխանեցին շատերը:

— Այո՛,— ժպտաց ընկեր Արևիկը և ուրախացած տվեց իր հաջորդ հարցը:

— Ո՞վ կարող է ասել, դա ի՞նչ թվական է՝ ՌՋԾԷ կամ 1957:

Լռել էին բոլորը:

— Երևի մեկնումեկի ծննդյան թվականն է,— կիսավստահ ու դողդողջուն ձայնով ասաց Թամարիկը:

— Այո՛, ապրես, բայց ո՞ւմ:

Պատասխան չկար:

— Դա, սիրելի՛ երեխաներ, Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանի այս նորակառույց շենքի ծննդյան թըվականն է: Այդ թվականին ավարտվեց նրա կառուցումը: Հին սովորություն է՝ շենքերի և հուշարձանների վրա գրել նրանց կառուցման թըվականները: Եթե ուշադիր լինեք՝ ձեր գյուղի եկեղեցու, խաչքարերի, հին գերեզմանների վրա կըտեսնեք այդպիսի տարեթվեր: Այդ հաշիվներով են նշված նաև այս ցուցափեղկերում դրված ձեռագրերի գրչության տարեթվերը:

— Իսկ ինչպե՞ս իմանանք նրանց իմաստները,— խանդավառված հարցրեց Գարեգինը:

— Դրա համար, սիրելի՛ պիոներներ, պիտի իմանաք, որ Մեսրոպ Մաշտոցի ստեղծած տառերի թիվը համասար է 36-ի և դրանցից ամեն մեկն ունի թվաքանական հատուկ արժեք: Կազմված էր թըվաքանական աղյուսակ...

Պիոներների հետաքրքրությունն ավելի մեծացավ:

Բացատրողը նկատեց դա, մոտեցավ անկյունում դրված գրասեղանին, վերցրեց մի փունջ խաղաքարտի նման նըկարազարդված և համա-

սարաշափ թերթեր ու բաժանեց պիոներներին:

— Մեր պապերի թվաբանական աղյուսակն է,— բացատրեց նա: — Այն բաժանված է 4 սյունակի. առաջինում՝ միավորներն են, երկրորդում՝ տասնավորները, երրորդում՝ հարյուրավորները, իսկ չորրորդում՝ հազարավորները: Հայկական տառերից յուրաքանչյուրի մոտ նշված է նրա համարժեքը, որպեսզի չիմացողներն օգտվեն նրանցից:

Երբ պիոներները ծանոթացան աղյուսակին, ընկեր Արևիկը դիմեց նրանց հարցնելով.

— Կարո՞ղ եք ասել, թվաբանական ի՞նչ արժեք ունի Ա տառը:

— Ա-ն հավասար է մեկի,— ասաց Արամը և ըսպասողական հայացքով նայեց բացատրողին:

— Ճիշտ է,— ասաց նա և տվեց հաջորդ հարցը.

— Իսկ Խ՞-ն:

— 40-ի:

— Իսկ Պ՞-ն:

— 800-ի:

Ընկեր Արևիկն ունկընդիրների հետաքրքրությունից ոգևորված՝ ասաց.

— Ես տեսնում եմ, որ դուք շատ ընդունակ եք և շատ եք հետաքրքրվում թվաբանական այս աղյուսակով: Որպեսզի դուք ավելի լավ տիրապետեք դրան, ես հիմա ձեզ կառաջարկեմ երկու հանելուկ, որոնք պիտի լուծվեն այդ աղյուսակի օգնությամբ: Դուք դրանք կլուծեք տանը և պատասխանները նամակով կուղարկեք ինձ: Այդ հանելուկները ես արտագրել եմ ահա այս ձեռագրերից, որոնցից մեկը 999 տարեկան է, իսկ մյուսը՝ 669: Անցյալ տարի լրացավ առաջինի 1000-ամյակը: Այդ տարեդարձը նշվեց մեծ շուքով:

Պիոներներն ավելի երկյուղածությամբ մոտեցան ցուցափեղկին. նրա պաղ ապակու տակից, ծերացած սուրհանդակների նման, իրենց էին նայում հեռավոր դարերից եկած խորհրդավոր ձեռագրերը:

— Այն էլ ասեմ,— շարունակեց ընկեր Արևիկը,— որ այդտեղ գտնվող հանելուկներն ավելի հին են, քան այդ ձեռագրերը. առաջինը մոտավորապես 1550 տարեկան է, իսկ երկրորդը՝ 850: Քանի՜-քանի՜ սերունդներ են լուծել դրանք. հիմա հերթը ձերն է:

— Բայց ինչու՞ այդ հանելուկների լեզուն ուրիշ տեսակ է, դժվարհասկանալի,— հարցրեց Գարեգինը:

— Դրանք գրված են հին հայերենով, առաջինը՝ գրաբարով, իսկ երկրորդը՝ միջին հայերենով: Առայժմ այսքան: Իսկ հիմա ես դրանք հին հայերենից կփոխադրեմ մեր այսօրվա լեզվով, որպեսզի հասկանաք և կարողանաք լուծել:

Պիոներները մոտեցան անկյունում դրված գրասեղանին և գրեցին թելադրվող հանելուկները:

1.

Իմ անունը բաղկացած է երեք տառից.
Առաջինը՝ երրորդն է միավորներից,
Երկրորդը՝ երկրորդն է տասնավորներից,
Իսկ երրորդը՝ հինգերորդն է հազարավորներից:

2.

Յոթերորդ տառն առ տասնավորներից,
Վեցերորդը՝ հարյուրավորներից,
Երեք երեսունի ճիշտ տառը գտիր,
Երկու հարյուրի տառով ավարտիր:

Անցան օրեր:

Մատենադարանի հասցեով ընկեր Արևիկն ըստացավ մի շարք նամակներ: Դրանք այն պիոներների նամակներն էին, որոնք պիտի լուծեին իրենց առաջարկված հանելուկները: Նա հափշտակությամբ ծանոթացավ բոլոր նամակներին: Բոլորի մեջ էլ զետեղված էին ճիշտ լուծումներ: Առաջինի պատասխանն էր «Գիր», իսկ երկրորդինը՝ «Հողմ»: Միայն Լիպա-

## ՀԱՅԵՐԵՆ ԱՅԲՈՒԲԵՆԻ ԹՎԱՅԻՆ ԱՐԺԵՔՆԵՐԸ

| ՄԻԱՎՈՐՆԵՐ | | ՏԱՍՆԱՎՈՐՆԵՐ | | ՀԱՐՅՈՒՐԱՎՈՐՆԵՐ | | ՀԱԶԱՐԱՎՈՐՆԵՐ | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Ա | 1 | Ժ | 10 | Ճ | 100 | Ռ | 1000 |
| Բ | 2 | Ի | 20 | Մ | 200 | Ս | 2000 |
| Գ | 3 | Լ | 30 | Յ | 300 | Վ | 3000 |
| Դ | 4 | Խ | 40 | Ն | 400 | Տ | 4000 |
| Ե | 5 | Ծ | 50 | Շ | 500 | Ր | 5000 |
| Զ | 6 | Կ | 60 | Ո | 600 | Ց | 6000 |
| Է | 7 | Հ | 70 | Չ | 700 | Ու | 7000 |
| Ը | 8 | Ձ | 80 | Պ | 800 | Փ | 8000 |
| Թ | 9 | Ղ | 90 | Ջ | 900 | Ք | 9000 |

րիտն էր սխալվել երկրորդ հանելուկը լուծելիս. «Երեք երեսունի ճիշտ տառը» նա համարել էր 33-ը և ստացել «Հոլգմ» անհասկանալի բառը: Մինչդեռ պետք էր երեքն ու երեսունը ոչ թե գումարել, այլ՝ բազմապատկել: Հատկապես ուրախացուցիչ էր Գարեգինի նամակը: Նա ոչ միայն ճիշտ էր լուծել այդ հանելուկները, այլև փորձել էր որոշել իրենց գյուղում գտնվող հին եկեղեցու կառուցման տարեթիվը: Այնտեղ, պատի արձանագրության մեջ, նա կարդացել էր «ՋԽԱ» տառերը և ստացել 941 թվականը:

Ընկեր Արևիկը մեղավորի պես ժպտաց. նա չէր հասցրել բացատրել, թե հին ժամանակներում գրված տարեթվերը որոշելիս, ստացված թվականին միշտ պիտի ավելացնել 551 տարի: Ուստի Գարեգինենց գյուղի եկեղեցու կառուցման ժամանակը ոչ թե 941 թվականն է, այլ՝ 941+551=1492:

Երբ Գարեգինն ստացավ ընկեր Արևիկի պատասխանը, շատ ուրախացավ և դրանից հետո ճիշտ որոշեց իրենց գյուղում գտնվող բազմաթիվ խաչքարերից չորսի տարեթվերը: Ընկեր Արևիկն իր վերջին նամակում գրեց. «Կեցցե՛ս, Գարեգի՛ն, դու հետագայում կարող ես մասնագետ դառնալ, որովհետև ոչ միայն ճիշտ ես որոշում հին հուշարձանների տարեթվերը, այլև շատ ես հետաքրքրվում դրանցով: Դժվարության հանդիպելիս, գրիր, ես քեզ սիրով կօգնեմ...»: Գարեգինի ուրախությանը չափ չկար: «Ինչ լա՛վ եղավ, որ գնացինք Մատենադարան»,— մտքում անվերջ կրկնում էր նա:

*ԱՍԱՏՈՒՐ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

# ԵՐԱԶԻ ԹՌՉՈՒՆԸ

ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

Արևը գնաց,
հոգնած հնձվորի նման,
արևը գնաց իր խրճիթը,
որը նստած էր բլուրներից այն կողմ
ծովամերձ եղեգնուտի եզրին:

Թռչունը գնաց
արևի ետևից,
թռչունը գնաց ամպի տակով,
խանձված մի ծղոտ
կտուցի մեջ:

Ելավ առաջին աստղը
կապույտ մթնշաղի միջով,
եկավ փոշոտված ճամփորդի նման
և իրեն նետեց
լճակի խորության մեջ:

Եվ երազը եկավ
նախշուն մի թռչունի նման,
եկավ անլսելի ու ծածուկ,
թևերը փռեց մեր արյան թավիշին
ու գնաց մեր կոպերի տակով
մեր հոգնությունն առած
իր կտուցին:



Փարիզ։ Լյուքսեմբուրգյան պալատ։ Մարդկային հեղեղը հոսում էր դեպի պալատի ամենաընդարձակ ու լուսավոր սրահը։ Սրահի կենտրոնում, բարձր պատվանդանին բազմել էր մի տարօրինակ ցուցանմուշ, սարք, որին «արիֆմոմետր» էին կոչում (հունարեն թիվ և չափել ՝ բառերից)։ Արիֆմոմետրի մոտ կանգնած էր սարքի հեղինակ, ֆրանսիացի գիտնական Պասկալը։ Նա սարքին «ստիպում» էր կատարել թվաբանական ցանկացած գործողություն։ Տպավորությունը ցնցող էր։ Այդ օրերին Փարիզում ամենից շատ հոլովվում էր օտարածին «արիֆմոմետր» բառը։ Մեքենայի շուրջը լեգենդներ հյուսվեցին, գրվեցին նրա գովքն անող տասնյակ պոեմներ։

Այս ամենը կատարվում էր 1641 թըվականին։

Այսօր էլեկտրոնային հաշվիչ մեքենան (ԷՀՄ) այնպես հիմնավոր է մըտել մեր առօրյայի, մեր կյանքի ամենաբազմազան ոլորտները, որ անհնար է լսած չլինել նրա գոյության մասին։

Եվ այսպես, ո՞րն է «նախահայրը» այսօրվա այն հաշվիչ մեքենայի, որը մի վայրկյանում կարող է կատարել, օրինակ, 20 միլիոն թվաբանական գործողություն։ Այնքան, որքան չեն կարող անել մեր մոլորակի բոլոր բնակիչները միասին՝ մեկ օրվա ընթացքում։

Պասկալի հաշվիչ սարքը գրավեց շատ գիտնականների ուշադրությունը։ Նրանք հետզհետե կատարելագործում էին այն։ Իսկ 1703 թվականին հռչակավոր գիտնական Լայբնիցը ոչ թե կատարելագործեց սարքը, այլ հեղաշրջեց։ Նա հաշվիչ սարքերի «բերանը լեզու դրեց»— նոր թվային լեզու։ Մինչ այդ սարքերի «թվամթերքը» կազմված էր 0-ից մինչև 9 թվերից, Լայբնիցը կրճատեց այդ «թվամթերքը», թողնելով միայն 0-ն և 1-ը։ Այսինքն, անցավ հաշվման 2-ական համակարգին, որն այսօր ընկած է ժամանակակից էլեկտրոնային հաշվիչ մեքենաների աշխատանքի հիմքում։

Հաշվիչ սարքը թեև ուներ իր «լեզուն», բայց մինչև էլեկտրականության գյուտը «թլվատ էր խոսում»։ Իսկ էլեկտրականության լեզվով՝ 1-ը

կարելի է նույնացնել հոսանքի գոյության հետ, իսկ 0-ն՝ բացակայության հետ։ Մի բան, որ հնարավոր չէր անել 10-ական թվասիստեմի դեպքում։

Աշխարհում առաջին էլեկտրոնային հաշվիչ մեքենան նախագծեց ամերիկացի Մաուչլին՝ 1942 թվականին։ Շատ երկրների բազմաթիվ գիտնականներ լծվեցին մեկը մյուսին արագորեն հաջորդող էլեկտրոնիկայի նվաճումները՝ էլեկտրոնային լամպերը, ռելեները, տրանզիստորները հաշվիչ մեքենաների մեջ ներդնելու գործին։ Հաշվիչ սարքերը կոչվեցին էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ—ԷՀՄ։

ԷՀՄ-ները մեծ զարգացում ապրեցին նաև մեր երկրում։ Իսկ 1957 թվականից այդ դժվարին գործին նվիրվեցին նաև Հայաստանի մասնագետները։ Ակադեմիկոս Սերգեյ Մերգելյանի և այլ նշանավոր հայ գիտնականների նախաձեռնությամբ Երևանում հիմնադրվեց մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտ, որն իր գոյության ավելի քան 20 տարիների ընթացքում նախագծել է «Արագած», «Երևան», «Մասիս», «Հրազդան», «Դվին», «Նաիրի» և այլ մակնիշի բոլոր սերունդներին պատկանող էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ։ Այո, ԷՀՄ-ների բնութագրման համար պաշտոնապես գործածվում է «սերունդ» տերմինը։

ԷՀՄ-ների սերնդափոխումը սերտորեն կապված է էլեկտրոնիկայի զարգացման փուլերի հետ։ Առաջին սերունդը երևաց 1940—50-ական թվականներին։ Նրա բնորոշ կողմը էլեկտրոնային լամպերի վրա կառուցված լինելն էր։ Այս սերնդի ներկայացուցիչներ էին նաև մեր «Արագածն» ու «Երևանը»։ Էլեկտրոնային լամպերին 50—60-ական թվականներին փոխարինելու եկան ավելի հարմարավետ կիսահաղորդիչային սարքերը՝ պայմանավորելով ԷՀՄ-ների երկրորդ սերնդի ծնունդը։ Ծնվեց նաև հայկական «Հրազդանն» ու «Դվինը»։ Դեռ չէր անցել մի տասնամյակ, երբ կիսահաղորդիչային առանձին սարքերն իրենց տեղը զիջեցին անհամեմատ փոքր չափսեր ունեցող, այսպես կոչված, ինտեգրալային սխեմաներին։ Կատարվեց ԷՀՄ-ների հաջորդ՝ երրորդ սերնդափոխությունը։ Մեր «Նաիրի—3»-ը հենց այս սերնդի արժանի ներկայացուցիչներից է, որն իր բարդ պարտականությունները պատվով է կատարում ինչպես մեր, այնպես էլ արտասահմանյան շատ երկրներում։ Արդեն պատրաստ է նաև «Նաիրի—4» չորրորդ սերնդի ԷՀՄ-ն։ Այն հիմնված է մեծ ինտեգրալային սխեմաների վրա, որն ամենևին էլ վերջնական կատարելագործում չի նշանակում։ Նրան փոխարինելու կգան հաջորդները։

Միամտություն կլինի կարծել, թե ժամանակակից ԷՀՄ-ն զբաղված է միայն թվաբանական գործողությունների կատարմամբ։ Այսօր ԷՀՄ-ն ի վիճակի է լուծել մաթեմատիկական, և ոչ միայն մաթեմատիկական, ամենադըժվարին խնդիրներ, թարգմանություններ կատարել բազմաթիվ օտար լեզուներից ու շախմատ խաղալ, ղեկավարել զանազան տեխնոլոգիական ու կառավարման պրոցեսներ։ Իսկ վերջերս բելոռուս մասնագետները ստիպեցին ԷՀՄ-ին նաև... խոսել։ Նա մարդկային ձայնով (ոչ ձայնագրված) պատասխանում է իրեն տրված բոլոր հարցերին։ Բավական է հարցնել, օրինակ, թե որտե՞ղ և ե՞րբ է ծնվել, ընդունենք, Չարենցը։ Նա մի ակնթարթում իր ինֆորմացիայի ջունգլիներից ջոկում է պատասխանը և սկսում. «Եղիշե Չարենցը ծնվել է...» և երբեք չի սխալվում։

ԱՐՄԵՆ ՀԱՄԲԱՐՅԱՆ

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# Ե Ր Ա Զ

Զամբյուղս վեր նետեցի,
Մնաց ծառի ճյուղին,
Մինչև կեսօր լացեցի,
Արցունքս ընկավ հողին:

Հողից մի ծիլ դուրս եկավ
Ու տարավ ինձ վերև,
Նայեցի իմ զամբյուղին՝
Մեջը լիքը արև:

Եվ արևի մեջ մի ծիտ
Երկու ձու էր ածել:
Ձագերն ելան, հարցրին,
Թե ինչու՞ եմ լացել:

Ամաչեցի, որ ասեմ՝
Իմ զամբյուղն եմ ուզում:
— Գնանք խաղանք,— ասացի,—
Ձեզ եմ սպասում:

# ԱՅԼ ՄԻ ԵՐԱԶ

Մտա մի մութ անտառ
Ու քայլեցի առաջ,
Տեսա ներմակ մի ծառ,
Ժառին՝ ներմակ մի արջ:

Ուզեցի ետ դառնալ,
Արջը աչքով արեց
Եվ ճյուղերի վրա
Համա՜ թե պար պարեց:

Եվ ճյուղերից հանկարծ
Ցած թափվեցին մրգեր
Եվ օդի մեջ նրանք
Սկսեցին երգել:

Շուրջը՝ թե՛ ձախ, թե՛ աջ,
Լցվեց երգ ու պարով:
Եվ քայլեցի առաջ
Կանաչ ճանապարհով:

Կանաչ ճանապարհով
Լույս էր, լույս էր հոսում,
Եվ արևն էր ուրախ
Իմ ետևից վազում:

# Ա Ս Տ Ղ Ե Ր Ը

Իսկ դուք գիտե՞ք,
Որ աստղերը...
Որ աստղերը
Մեծ են, մե՜ծ:
Հայրիկս ասաց՝
Մեր տնից էլ,
Մեր բակից էլ
Շատ են մեծ:

Թե չէ, ասաց,
Տարեդարձիս
Գոնե մեկը կբերեր:
Բայց թե բերեր,
Որտե՞ղ դներ
Այդպիսի մեծ
Մի նվեր:

Հետո ասաց,
Թե աստղերը...
Թե աստղերը
Տաք են, տա՜ք,
Եթե ցած գան՝
Ինչ կա-չկա
Կմոխրանա
Նրանց տակ:

Դրա համար
Հեռացել են,
Շատ ու շատ են
Հեռացել,
Եվ երկնքի
Տոնածառին
Խաղալիքներ են դարձել:

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ՈՒՇ ԽԵԼՔԻ ԵԿԱԾ ԱՌՅՈՒԾԸ



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Առյուծը ծնվել էր Աֆրիկա կոչվող աշխարհամասում, Կիլիմանջարո կոչվող լեռան ստորոտում և ամբողջ օրը անց էր կացնում սավաննայում (սավաննան այնպիսի մի հարթավայր է, որտեղ բարձր խոտ է աճում և մացառուտներ ու հատուկենտ ծառեր կան)։ Առյուծը ամբողջ օրը խաղում էր, թավալ տալիս խոտերի մեջ, կուշտ ուտում, իսկ երբ հոգնում էր՝ քնում։

Այս տեսակետից (խաղալու, թավալ տալու, ուտելու և քնելու) ամեն ինչ լավ էր։ Վատ էր այն, որ Առյուծը չէր սիրում սովորել։ Այո, այո, առյուծները նույնպես սովորում են։ Ընդհանրապես չկա որևէ գազան կամ թռչուն, որ մինչև մեծանալը չսովորի։ Առյուծի դպրոցը սավաննան էր, ուսուցիչը՝ ծնողները։ Բայց ինչքան էլ նրանք չարչարվում էին, ոչինչ չէր ստացվում։ «Սովորելու համար երբեք ուշ չէ», ասում էր Առյուծը և խաղով ընկնում։ Ահա այսպես եղավ, որ նա ոչինչ չսովորեց (այդ թվում՝ գրել-կարդալ), իսկ բազմաթիվ բանաստեղծություններից, որ փորձում էին սովորեցնել նրան, սովորեց միայն մեկը, ավելի ճիշտ, այդ բանաստեղծության միայն առաջին երեք տողը մտքում պահեց։

Առյուծների լեզվով այդ բանաստեղծությունը այսպիսին էր.

Ըր-ըր, ըր-ըր,
Ըր-ըր, ըր-ըր,
Ըր-ըր-ըր-ըր, ըր-ըր-ըր...

Իսկ եթե թարգմանենք մեր լեզվով, այսպես կհնչեր.

Իմ բարձր լեռ,
Ճերմակ կատար,
Ծննդավայր իմ միակ...

Շարունակությունը ես էլ չգիտեմ, որովհետև միայն այսքան գիտեր Առյուծը, իսկ ես այս բանաստեղծությունը նրանից եմ լսել։

Ոչ, ես չեմ եղել Աֆրիկա աշխարհամասում, առավել ևս, Կիլիմանջարո լեռան ստորոտում ու սավաննա կոչվածում։ Այս բանաստեղծությունը Առյուծից ես լսել եմ Քաղաքի կենդանաբանական այգում։ Բանն այն է, որ երբ այդ կենդանաբանական այգու բնակիչ դառնալու հնարավորություն ստեղծվեց, Առյուծը իր մյուս ցեղակիցների

նման չթաքնվեց մացառուտներում (չսովորելու հետևանքով կարգին թաքնվել էլ չգիտեր) և թույլ տվեց, որ իրեն բռնեն ու կենդանաբանական այգի բերեն։ Որքան էլ ցավալի է, նա մեծացավ վանդակում, որքան էլ զարմանալի է՝ զգայուն մեծացավ։ Եվ հասկացավ, որ «սովորելու համար երբեք էլ ուշ չէ» արտահայտությունը գոնե առյուծների համար կիրառելի չէ։ Հիմա նա շատ էր ուզում սովորել, բայց առյուծները կարող են սովորել միայն իրենց դպրոցում՝ սավաննայում և միայն իրենց ուսուցիչներից՝ ծնողներից։ Եվ քանի որ զգայուն էր, տխրեց։ Տխրեց, որ չգիտե այն ամենը, ինչ պարտավոր էր իմանալ Առյուծը։ Նրա տրամադրությունն այնքան ընկավ, որ սկսեց ամբողջ օրը պառկած անցկացնել։ Գլուխը դնում էր թաթերի վրա, աչքերը փակում և փորձում հիշել այն, ինչ իրեն սովորեցնում էին, բայց իր մի ականջից մտնում էր, մյուսից դուրս գալիս։ Պատկերացրեք, հիշելու ցանկությունն այնքան մեծ էր, որ նա որոշ բաներ իսկապես հիշեց։ Օրինակ, հիշեց, թե վտանգի դեպքում ինչպես պետք է թաքնվել, բայց դա նրան արդեն չէր կարող պետք գալ։ Վերջ ի վերջո նա հասկացավ, որ միակ բանը, որ հիշելու դեպքում իրեն քիչ թե շատ կարող է պետք գալ, այսինքն, քիչ թե շատ կարող է օգնել հայրենիքի ու հարազատների կարոտն առնելու, իր իմացած միակ բանաստեղծությունն է, բայց ինչքան էլ չարչարվեց, երրորդ տողից այն կողմ չկարողացավ անցնել։ Եվ ստիպված բավարարվեց այդ երեք տողով.

Ռր-ռր, ռր-ռր,
Ռր-ռր, ռր-ռր,
Ռր-ռր-ռր-ռր, ռր-ռր-ռր...

Որը, ինչպես հիշում եք, նշանակում է.

Իմ բարձր լեռ,
Ճերմակ կատար,
Ծննդավայր իմ միակ...

Առյուծը հաճախ է նամակ ստանում։ Գրում են հարազատները՝ Աֆրիկայից։ Բայց, ներեցեք, պետք է ասեի՝ նկարում են։ Այո, դրանք այնքան էլ սովորական նամակներ չեն՝ նկար-նամակներ են։ Հարազատները գիտեն, որ Առյուծը գրել-կարդալ չգիտե, ուստի նկարում են։ Նկարում են իրենց՝ փարթամ բաշերով, կեռ պոչերով, որը նշանակում է՝ մենք շատ լավ ենք։ Առյուծը նայում է նկարին, ամեն ինչ հասկանում է և գրում պատասխան նամակը։ Նորից սխալվեցի, պետք է ասեի՝ նկարում, չէ՞ որ նա գրել չգիտե։ Պատասխան նամակում Առյուծը նկարում է իրեն՝ վանդակում պառկած, գլուխը թաթերին դրած, աչքերը փակ, պոչը թույլ-թույլ վանդակի հատակին գցած, որը նշանակում է՝ ես շատ-շատ տխուր եմ։

Ուղարկում է առյուծը պատասխան նամակը, ապա իսկապես էլ պառկում, գլուխը դնում թաթերին, աչքերը փակում... որպեսզի գոնե մտովի տեսնի բարձր, ձյունակատար լեռը, գոնե մտքում իրեն զգա հայրենի սավաննայում։ Եվ գլուխը թաթերին դրած, աչքերը փակ գոմռում է.

Ռր-ռր, ռր-ռր,
Ռր-ռր, ռր-ռր,
Ռր-ռր-ռր-ռր, ռր-ռր-ռր...

Այսինքն՝

Իմ բարձր լեռ,
Ճերմակ կատար,
Ծննդավայր իմ միակ...

Իսկ ովքեր չեն հասկանում Առյուծի լեզուն, կարծում են, նա ծույլ է ու քնկոտ և գոմռում է բավականությունից։

ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԾԻՏԻԿՆ ՈՒ ԵՍ

ԱՂԱՎՆԻ

Վաղ օրերի բարեկամ ենք
Ես ու Ծիտիկ Ծիտիկյանը:
Նրա բույնը՝ պատի մի ճեղք,
Ես ապրում եմ այս մեծ տանը:

Բայց դա երբեք չի խանգարում,
Որ Ծիտն ու ես ընկերաբար,
Տարին բոլոր ձմեռ, գարուն,
Ամեն բանում օգնենք իրար:

Այ, օրինակ, ձմռան ցրտին,
Երբ Ծիտիկը կեր չի ճարում,
Փշրանքներով իմ սեղանի՝
Ես եմ նրան կերակրում:

Գարնանն էլ, երբ ծառերին մեր
Թրթուր ու որդն են բազմանում,
[illegible] տեսնվեր,
Իմ Ծիտիկն է իր գործն անում:

Մաքրում է նա տերև ու ծառ
Վնասատու միջատներից,
Ու ես, անշուշտ, դրա համար
Շնորհակալ եմ նրանից:

Եվ այսպես էլ ապրում ենք մենք
Ու միմյանց հոգսը քաշում:
Դե, հիմա դուք լավ միտք արեք,
Թե գրույցն այս ինչ է հուշում:

Լավ չէ՞ ր, եթե ամեն մեկն էլ
Մի բարեկամ ծիտ ունենար,
Որը նրա հոգսին հասներ,
Ինքն էլ՝ ճգնում նրա համար..



# ԲՈԲՆ ՈՒ ՓԻՍՈՆ

Փիսոն Բոբին ասաց մի օր.
— Դու լավ շուն ես,
Ինձ չես կծում ու հալածում:

Բոբիկն էլ թե՝
— Հետո՞ ինչ որ,
Ես ինքս էլ եմ այդպես կարծում,
Բայց տուն չունեմ
Ու շարունակ,
[illegible] շոգին, ձմռան [illegible]

Ես էլ կատու,
Մարդկանց համար ամոթ չէ՞, որ
Ապրենք այսպես
Անտեր, անտուն:

Որոշեցին ու գնացին.
[illegible]
Թե՛ ա՜յ Խաչիկ, Վաչիկ, Աշիկ,
Մեզ [illegible]



Պատերի տակ,
Դողդողալով, ահը սրտիս,
Թե անցորդներն ինձ կթակեն,
Սա ի՞նչ կյանք է...

Ու փիսիկը խոսեց նորից
Տխու՜ր, տխու՜ր.
— Քո՛ւյր, շատ ճիշտ ես,
Ծնված օրից
Ես էլ քեզ պես
Չունեմ գլխիս ծածկ ու կտուր,
Մեկը չկա, որ խղճա ինձ,
Մի պուտ ջուր տա, հաց մի փշուր:
Քաղցած ու խեղճ
Հոտոտում եմ
Աղբանոցը սրա, նրա,
Ու շարունակ ինձ ծաղրում են
Մկնիկները մեծաբերան:
Արի՛ գնանք մարդկանց պատմենք
Վիճակը մեր,
Ախր, չէ՞ որ մենք ու նրանք
Հին օրերի բարեկամ ենք:
Վերջ ի վերջո, օրինավոր
Դու շնիկ ես,

Նկ. ՎԱՆՈՒՇ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Սուրե՛ն, Կարե՛ն,
Եթե, իրոք, դուք մեր տերն եք,
Սա ձեզ համար շատ ամոթ է,
Մի բա՛ն արեք:

Թե տղաներն ինչ արեցին,
Ես չեմ ասի,
Բայց խնդրում եմ փոքրին, մեծին,
Լավ մտածեն թող այս մասին:
Շունն ու կատուն
Չէ՞ որ, իրոք, ավելորդ չեն,
Դե, ուրեմն, անտեր-անտուն
Ինչու՞ շրջեն...





# ԿԱԽԱՐԴԻ ԱՇԱԿԵՐՏԸ

*ԲՈԺԵՆԱ ՆԵՄՑՈՎԱ*

Լինում են, չեն լինում մի կախարդ ու մի աղքատ մարդ: Կախարդը ոչ ոք չուներ, իսկ աղքատն ուներ մի ուշիմ տղա: Մի անգամ կախարդը գալիս, էս աղքատ մարդուն ասում է՝ տղայիդ աշակերտ տուր ինձ, ես նրան սովորեցնեմ իմ արհեստը: Աղքատն ուրախանում է ու տղային աշակերտ տալիս նրան:

Կախարդը տղային տանում է իր թագավորությունը, որ գտնվում էր գետնի տակ: Նրա պալատը ոսկուց էր, արծաթից ու թանկագին քարերից, որի կուրացուցիչ փայլից տղան աչքերը կկոցելով, բացականչում է.

— Ա՜խ, թե որ հայրս այս տեսներ, հայիլ-մայիլ կմնար:

Կախարդի մոտ ամեն ինչ տղայի սրտով էր: Որտե՞ղ իրենց խրճիթը, որտե՞ղ չքեղ այս պալատը: Իսկ ի՜նչ ուտելիքներ էին նրան տալիս, թագավորն էլ երևի դրանցից չէր ուտում: Սակայն տղայի ուրախությունը երկար չտևեց: Չնաշխարհիկ ուտելիքներից կշտացավ ու կարոտեց իրենց տանը:

— Հորս մոտ ավելի լավ էր, չնայած շատ անգամ ուտելու բան չէինք ունենում... Ա՜խ, երանի հիմի այնտեղ լինեի:

Կախարդը նկատեց, որ իր հյուրը տխուր է և հարցրեց.

— Ինչու՞ ես քիթդ կախել, այստեղի ի՞նչը չես հավանում:

— Է՛հ, ուրախանալու ի՞նչ կա այստեղ, որ ուրախանամ, խաղընկեր չկա, զրուցընկեր չկա... Բաց թող ինձ գնամ հորս մոտ,— խնդրեց տղան:

— Բաց թողնելը բաց չեմ թողնի, իսկ զվարճանալ՝ խնդրեմ, զվարճացիր ինչքան սիրտդ ուզի,— այս ասելով, կախարդը բռնեց նրա ձեռքը և տարավ մի գեղեցիկ դահլիճ: Այնտեղ երեք դուռ կար: Ցույց տվեց այդ դռները և ասաց.

— Ժամանակն է, որ ես գնամ, իսկ դու բացիր ձախ կողմի դուռը և զվարճացիր, երբ ձանձրանաս, բացիր աջ դուռը, իսկ մեջտեղի դուռը չբացես, թե չէ վատ կլինի քեզ համար:

Այս ասաց կախարդն ու անհետացավ, իսկ տղան բացեց ձախ դուռը և հայտնվեց մի մեծ դրախտային այգում, վայրի ծաղիկներով, չտեսնված պտուղներով լիքը: Խոտերի մեջ վազվզում էին զարմանալի կենդանիներ, ճյուղերին երգում էին հրաշք հավքեր: Տղան շլացել, չգիտեր որ կողմ նայի: Մեկ այս, մեկ այն կենդանու ետևից վազեց, որ բռնի, մեկ այս, մեկ այն պտուղից քաղեց կերավ, հետո դրանից էլ ձանձրացավ և այգուց դուրս եկավ, մտավ դահլիճ և ուղիղ գնաց ու բացեց աջ կողմի դուռը:

Այդտեղ նրա զարմանքին էլ չափ



չկար: Նա սքանչացած դիտում էր ավելի հրաշալի մի այգի: Որտեղի՞ց է գալիս զմայլելի այդ երաժշտությունը, որից սիրտը մարում էր: Ամեն կողմից հայտնըրվեցին գեղեցիկ, ալացիկ աղջիկներ ու տղաներ: Աղջիկներից մեկը բռնեց նրա ձեռքը և տարավ պարելու: Աշխարհը մոռացած, նա պարում էր, իրենց իրեն երգելով.

— Ոչ մի գնով այս այգին չեմ թողնի գնա:

Բայց ուրախության ամենաթեժ պահին մեկ էլ հիշեց, որ երրորդ դուռն էլ կա: Այստեղ արդեն նրան այլևս ոչինչ չէր կարող ետ պահել, ո՛չ այգին, ո՛չ երաժշտությունը, ո՛չ նոր ընկեր-ընկերուհիները: «Կյանքիս գնով էլ լինի պետք է տեսնեմ, թե ինչ կա երրորդ դռան ետևը»,— որոշեց նա:

Բաց արեց երրորդ դուռը և ի՞նչ տեսավ. մի մեծ սենյակ, մեջտեղը գրասեղան, գրասեղանի վրա մի մեծ գիրք, կողպեքով կողպած. հենց այդ էլ գրավեց մեր տղայի ուշադրությունը:

Շատ չարչարվելուց հետո վերջապես կողպեքը բացեց և այլևս չպոկվեց գրքից: Այդտեղից էլ հայտնի դարձավ նրան կախարդի ողջ գաղտնիքը:

Մի գեղեցիկ օր գիրքը նորից կողպեքով փակեց և գնաց հոր մոտ: Տղային թվում էր, թե գետնի տակի թագավորությունում քիչ էր մնացել, իսկ հորը թվում էր, թե շատ ժամանակ է անցել: Նա դժվարությամբ ճանաչեց իր հասունացած տղային:

— Հայրիկ,— որդին դարձավ հորը, թևի տակից մի պարան հանելով.— հիմա ես ձուն կդառնամ, դու այս պարանը կապիր վզիս և տար քաղաք՝ շուկա: Կախարդը երևի արդեն ինձ փնտրում է: Ուր որ է կհայտնվի, և հենց որ տեսնի այստեղ չեմ, մեր հետքերով կգա կգտնի մեզ: Ինձ համար ինչ գին ուզես՝ կտա: Դու ինձ ծախիր, բայց պարանը չմոռանաս ձեռից առնել, թե չէ վատ կլինի ինձ համար:

Հայրը գլխով համաձայնության նշան արավ և հենց որդին դարձավ ձուն, պարանը կապեց վիզը, առավ տարավ շուկա: Շուտով կախարդը եկավ այստեղ ու, թե՝ արի ձունը ծախի, առնեմ: Հայրը մի շատ մեծ գին պահանջեց, բայց կախարդը ետ չկանգնեց:

Հայրը փողն առավ, պարանը հանեց ձան վզից, ձունը տվեց նրան. կախարդը անհետացավ: Ինքը վերադարձավ տուն, տեսավ տղան նստած սեղանի առջև, ժպտում է:

Հայրն այստեղ հասկացավ, որ որդին սովորել է կախարդության արհեստը, և երբ մյուս առավոտ որդին ասաց, որ հիմա էլ եզնիկ եմ դառնալու, հայրն ուրախացավ, պարանը կապեց եզնիկի վիզն ու տարավ շուկա: Այնպիսի գին պահանջեց եզնիկի համար, որ միայն կախարդը կարող էր տալ: Այս անգամ էլ հայրը չմոռացավ պարանը ետ վերցնել: Եվ երբ վերադարձավ տուն, դարձյալ տեսավ որդին սեղանի առջև նստած, ժպտում է:

Երրորդ օրը որդին դարձավ ձի, և դարձյալ հորը պատվիրեց չմոռանալ պարանը ետ բերել:



Հրաշալի ձի էր: Մերունին նրա համար անհեթեթ գին ուզեց: Բայց կախարդը այդ էլ գնեց: Մերունին այդքան փողը որ տեսավ, ուրախությունից խելքը թռցրեց ու մոռացավ կատարել որդու պատվերը: Իսկ կախարդը պարանից բռնած՝ ձին դուրս տարավ քաղաքից:

Ճանապարհին պատահած դարբնոցի մոտ կանգնեց և դարբնին պատվիրեց ձին պայտել: Դարբինը գովեց նժույգը, բարձրացրեց նրա առջևի ոտքը, որ պայտի, ձին գլուխն իջեցնելով, նրա ականջին շշնջաց.

— Պարանը հանիր վզիցս, ես այն ոսկի կդարձնեմ:

Դարբինը իսկույն կատարեց նրա խնդիրը: Եվ ձին դարձավ արտույտ, թռավ երկինք:

Կախարդն իսկույն դարձավ բազե և ընկավ փոքրիկ արտույտի ետևից, իսկ արտույտը թևիկներն արագ-արագ թափահարելով վայրկենապես հայտնվեց ստորգետնյա թագավորության այգում, ուր ճեմում էր արքայադուստրը: Թռչնակը դարձավ թանկագին ակով մատանի և շողշողաց արքայադստեր մատին: Այն ժամանակ կախարդը արքայադստեր վրա սև ցավ գցեց: Արքայադուստրը նվաղեց ընկավ: Պալատականները վազեցին եկան, իրարով անցան, կանչեցին բժշկին: Կախարդը ներկայացավ այդտեղ իբրև աշխարհում հայտնի դեղ ու դարման անող: Բայց բուժումն սկսելուց առաջ նա արքայից պահանջեց իր դստեր մատի մատանին: Արքան խոստացավ, իսկ կախարդը գնաց պատրաստելու իր հրաշագործ դեղը: Այդ ժամանակ մատանին շշնջաց արքայադստերը.

— Խնդրում եմ քեզ ինձ մի՛ տա բժշկին, այլ գցի գետին:

Արքայադուստրը զարմացավ, բայց հանեց մատանին մատից ու նետեց հատակին: Մատանին դարձավ սիսեռիկ ու գլորվեց ընկավ հատակի ճեղքի մեջ: Կախարդն էլ դարձավ աղավնի և ընկավ սիսեռիկի ետևից, որ կտցի: Բայց սիսեռիկը հասցրեց հատակի տակ անցնել: Աղավնին դարձավ մուկ և մուկ ճեղքից սողոսկեց ներս, իսկ սիսեռիկը դարձավ կատու և խեղդեց մկին:

Կախարդի աշակերտը նորից իր առաջվա պատկերն առնելով, ներկայացավ արքայադստերը և սրտանց շնորհակալություն հայտնեց նրան: Հենց առաջին հայացքից նրանք սիրահարվեցին և շուտով տեղի ունեցավ նրանց հարսանիքը:

*Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*






Դուք տեսե՞լ եք ինչպես են ապրում գազանները կրկեսում:

Նրանք բոլորը՝ փղերն ու կապիկները, զեբրերն ու արջերը, պոնիներն ու շները, նույնիսկ վագրերն առյուծների հետ ընդհանուր լեզու են գտնում: Ի՞նչն է նրանց մտերմացնում: Գուցե աշխատանքը, «պրոֆեսիան», գուցե նաև այն, որ երկար ժամանակ նրանք հարևաններ են դարձել՝ ախոռում: Իսկ դա նույնն է թե հարևան լինես շենքում, մեծ տան մեջ: Խելացի բան է, երբ հարևանները խաղաղ և բարեկամ են լինում իրար հետ... Ո՛չ, նրանք նույնիսկ հարևաններ էլ չեն, այլ մոտիկ ազգականներ՝ միասին են ճամփորդում քաղաքից քաղաք:

Այս պատմությունը կարող է ձեզ զարմացնել և դուք ասեք՝ «Համա թե հնարել են»... Բայց դա հնարված բան չէ: Իրականում այդպես էլ եղել է: Հավատացեք:

...Պոնին հիվանդացավ: Անունը Օսլիկ էր: Նլույթից հետո հրաժարվեց ընթրիքից, հետո ցավից սկսեց ճռճվել, սմբակներով հարվածել և բղավել: Փորը ուռեց, շրթունքները փրփուրով պատվեցին: Ստամոքսի սովորական ցավ է, մտածեցինք: Երևի խոտը նեխած է եղել կամ էլ գարու հետ որևէ սուր բան է կուլ տվել:

Օսլիկի ստամոքսը լվացին, ջուր

Սկիզբը՝ № 12, 1980 թ.

խմեցրին և ստիպեցին ոտքի կանգնել։ Բայց նրա ոտքերն իրար էին խառնվում, չէին ենթարկվում։ Իսկ բժիշկներն էլ պառկելը կամ տեղում կանգնելն արգելեցին։ Ամբողջ գիշեր մենք Օլիկին մեծ դժվարությամբ պտտեցնում էինք։ Առավոտյան կողմը նրա ցավը թեթևացավ... Բոլորը հանգստացան։ Վտանգը կարծես թե անցավ։

Նոր օրը սովորականի պես սկսվեց։ Բայց դուք երևի չգիտեք, թե ինչպես է իր օրն սկսում կրկեսային կենդանիների ընտանիքը... Առավոտյան յուրին գալիս են նրանց խնամող մարդիկ։ Բոլորը շտապում են՝ մեկ ժամից փորձն սկսվում է։ Գազանների «սավանը»՝ խոտ կամ թեփ, մսուրներից դուրս պետք է հանել, իսկ յուրաքանչյուր «արտիստի» պետք է կարգի բերել՝ լվալ, սանրել։ Ուղտերին, օրինակ, ավլում էլ են։ Այո, այո, հենց ավլում են, վերցնում են ավելը և բրդի միջից հանում են ինչ-որ մեջը մտել է։ Եվ որովհետև մեջքի թամբին չեն հասնում, խնդրում են կենդանուն պառկել...

Ուրին փորձն սկսվում է։ Գազանների համար դա նույնն է, ինչ մեր մարզանքը։ Հետո, պարզ է, գալիս է նախաճաշի ժամը։ Այնուհետև՝ զբոսանք։ Երեկոյան կողմ «արտիստները» պետք է հանգստանան, որպեսզի արենայի վրա «ձևի մեջ» լինեն, լավ տեսք ունենան։

Ինձ համար հիշելի այն օրն էլ սովորականի պես սկսվեց։ Միայն Օլիկին փորձի չտարան։ Նա քնած էր։ Վարժեցնողին շատ զարմացրեց փորձի բոլոր մասնակիցների վարքը։ Նրանք բոլորն էլ ամեն ինչ անում էին մի կերպ, հապճեպորեն, կարծես ինչ-որ տեղ էին շտապում։ Ամենաճշտապահ Կատրինն անգամ ցրված էր և անուշադիր։ Կնիկը բույլ կախել էր, ականջները չէր շարժում... Վարժեցնողը մտածեց, թե որևէ մեկը վիրավորել է նրան։

— Ի՞նչ է պատահել, Կատրի՛ն։

Փիղը նրան նայեց տխուր, ոչինչ չտեսնող հայացքով։ Տարան նրան իր կացարանը հանգստանալու, իսկ նա արագ շրջվեց դեպի ախոռը։ Դռները նրա համար փոքր էին, բայց նա հաջողեցրեց գլուխը ներս խոթել և այնպիսի ոռնոց բարձրացրեց, կարծես տագնապի ազդանշան էր տալիս։

Մյուս կենդանիներն էլ իրենց տարօրինակ պահեցին։ Ամեն մեկը ձգտում էր այցելել Օլիկին։ Նա ամբողջովին թաց էր, քրտինքի մեջ կորած։ Կարծես նրան հենց նոր լողացրել էին։

— Վատ են մեր գործերը, եղբայրի՛կ, երևում է, լուրջ հիվանդ ես,— հառաչեց վարժեցնողը։

Բժիշկ կանչեցին։ Սա հայտնվեց միայն երեկոյան, բարձրահասակ, երկարամազ, այնպես հագնված, կարծես խանութի ցուցափեղկից էր իջել։ Քայլում էր կրկեսի միջով անընդհատ շուրջը նայելով, որ մի բանի չկպչի, վերարկուն չկեղտոտի։

— Ձեզ մոտ կենդանու ուժեղ հոտ է տարածվել,— ասաց նա, զզվանքով դեմքը ծռմռելով։

Կենդանիների բժիշկը Օլիկին էլ մի կերպ նայեց, փորը շոշափեց, տաքությունը խնդրեց չափել։

— Ամեն ինչ պարզ է։ Հիմա դեղ կգրեմ։ Մի անգամ էլ երևի կգամ։ Դատարկ բան է...

— Ինչպե՞ս թե դատարկ բան է,— առարկեց վարժեցնողը։

— Պետք չէ չափազանցել։ Ե՞ս եմ բժիշկը, թե՞ դուք...— գլուխ տվեց և հեռացավ։

— Բախտներս չբերեց, իմ խե՛ղճ Օլիկ,— հառաչեց վարժեցնողը։— Այսպիսի բժշկին կարելի՞ է հավատ ընծայել։ Ստիպված ուրիշ անասնաբույժ պիտի փնտրենք։

Հենց այդ օրը երեկոյան, ներկայացումից հետո, վարժեցնողին մոտեցան երկու հանդիսատես՝ մգդակած բանկռնով և վալենկաներով։ Երևում էր, քաղաքից չէին։

— Մենք այստեղից 30 կմ վրա գտ-

նրվող ձիաբուծարանից ենք,— ասաց նրանցից մեկը,— գաճաճ պոնիներ ենք աճեցնում: Ես զոոտեխնիկ եմ, իսկ ընկերս՝ անասնաբույժ: Ուզում ենք ձեր հոգեզավակներին նայել:

Վարժեցնողը ուրախ-ուրախ նրանց ախոռ տարավ:

— Մեր պոնին հիվանդացել է,— բացատրեց նա,— դեղեր ենք տալիս, բայց վիճակը նույնն է:

Ընկերները մոտեցան Օլիկին: Բժիշկը պպզեց և սկսեց շոյել նրան:

— Դե՛հ, բարեկա՛մս,— մեղմ ասաց նա,— մի նայենք տեսնենք ի՞նչ է եղել քեզ:— Նա երկար զննեց Օլիկին, կարդաց տրված դեղատոմսերը:

— Այս դեղերը չեն օգնի... Վիճակը, ինչ թաքցնեմ, ծանր է: Նույնիսկ վստահ չեմ, թե կարելի է նրան փրկել:— Նա շրջվեց զոոտեխնիկի կողմը:

— Դու առանց ինձ վերադարձիր, լա՞վ: Միայն թե որևէ մեկին ուղարկիր գործիքներով ու դեղերով: Հիմա կգրեմ...— Հետո նորից խոսեց հիվանդի հետ.

— Քեզ Օլիկ են կոչու՞մ: Իսկ ինձ՝ Տրոֆիմ: Հիմա ես ու դու միասին կլինենք:

Օլիկի տեսքը վատ էր, շատ վատ: Կողերը ներս էին ընկել, շնչառությունը չէր լսվում, միայն փորն էր երբեմն-երբեմն դողում: Նա նայում էր ուղիղ Տրոֆիմի աչքերի մեջ, կարծես օգնություն էր խնդրում:

Հինգ օր պայքարեց բժիշկը Օլիկի կյանքի համար: Ամեն կես ժամը մեկ սրսկումներ էր անում, և՛ ցերեկը, և՛ գիշերը: Ինքն էր կերակրում և հենց կողքին էլ քնում էր: Իսկ ինքը ոչինչ չէր ուտում, չէր հասցնում: Միայն թունդ սուրճ էր խմում, որ սրսկման ժամը բաց չթողնի... Եվ կրկեսի բոլոր կենդանիները, թվում էր, հասկանում էին, որ Տրոֆիմն իրենց բարեկամն է: Երբ նա մի քանի րոպեով Կատրինին տեսության էր գնում, սա ականջներն էր թափահարում և կնճիթով քնքշորեն փաթաթվում էր նրան:

Մի անգամ կրկես մտավ այն մյուսը՝ զզվող բժիշկը... Ուզում էր վարժեցնողից ներկայացման անցատոմս խնդրել: Կենդանիները վրդովվեցին՝ ձիերը խրխնջում էին, շները՝ հաչում, իսկ սիրելի, անչառ Ստյոպա ուղտը թքեց եկվորի ետևից:

Բայց սրանով գործը չվերջացավ... Երբ անկոչ հյուրը փղատան կողքից անցնում էր, Կատրինը նկատեց նրան և... եկվորն անհայտացավ: Իսկ հետո վարժեցնողը սարսափով լսեց նրա ականջ ծակող ճիչը.

— Օգնե-ցե՛ք:

Գոռոզ անասնաբույժը թպրտում էր ուղղակի առաստաղի տակ, իր մոդայիկ վերարկուի օձիքից կախված հսկայական կեռից, որից Կատրինի երկար և ծանր ծածկոցն էին կախում:

— Ինչ եք նա-յու՞մ,— ոռնում էր Կատրինի գերին:— Թող աստիճաններ բերեն: Միայն թե դուք միք գնա: Վախենո՛ւմ եմ: Ուղարկեք աստիճանների ետևից:

— Ես ձեզ կիջեցնեմ աստիճաններով, բայց ավելի լավ է Կատրինին խնդրեմ թող ինքը իջեցնի...

— Ո՛չ, շնորհակալ եմ: Ես կսպասեմ...

Նա դեռ հինգ րոպե կախված մնաց: Իսկ Կատրինը կանգնել էր հեռավոր անկյունում, կնճիթն էլ իջեցրել էր: Նա գիտեր, որ իրեն կհասնի այս արարքի համար, կարող է և քաղցրավենիքից զրկեն, բայց նա զգում էր, որ ինքը ճիշտ է վարվել և չէր վախենում:

— Դուք լավ պրծաք,— ասաց վարժեցնողը գզգզված անասնաբույժին, երբ սա ցած էր իջել:— Կատրինը կարող էր ձեզ հաշմել:

Թեթևամիտ բժշկին այլևս ոչ ոք չտեսավ: Բայց մեզ համար հանելուկ մնաց, թե ինչպես Կատրինը գլխի ընկավ, որ Օլիկը այդ բժշկի պատճառով քիչ մնաց մեռներ:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*

# ԺԱՄԱԿԻՆ ԸՆԿԵՐ ՉԿԱ

Դաշտամկան, սրընշակի, խլուրդի կերած օրական սնունդը կազմում է նրանց սեփական քաշի 50—75 տոկոսը, կատվիներ՝ միայն 5, իսկ փղիներ՝ ընդամենը 1,5—2 տոկոսը: Զարմանալի չէ, որ փոքր կենդանիները հաճախ են սնվում և առանց սննդի չեն կարող երկար դիմանալ: Վերը նշված փոքր կենդանիներից յուրաքանչյուրը սովից կըսատկի 10—15 ժամում, ամենաշատը՝ մեկ օրում, իսկ կատուն կամ փիղը եթե մի քանի օր ծոմ պահեն, նրանց հետ ոչ մի սարսափելի բան չի պատահի:

Սովից չսատկելու համար շատ կենդանիներ անբարենպաստ պայմաններում խոր քնի մեջ ընկնելու ունակություն են ձեռք բերել՝ այդպիսով էներգիայի վատնումը հասցնելով նվազագույնի: Այդպես են վարվում գետնասկյուռներն ու ճագարամկները, ոզնիները, նույնիսկ որոշ թռչուններ (չրածիծառ, կոլիբրի):

Երկկենցաղների, սողունների, միջատների էներգիայի պահանջը կախված է օդի ջերմաստիճանից: Ցուրտ եղանակներին նրանց օրգանիզմում բոլոր քիմիական ռեակցիաները խիստ դանդաղում են: Դա վիշապ օձերին թույլ է տալիս մեկ անգամ կուշտ ճաշելուց հետո առանց սննդի մնալ մեկ տարուց ավելի: Դրա փոխարեն նրա ճաշը կարող է շատ պատկառելի լինել. ասիական վանդակավոր պիթոնը միանգամից կարող է ուտել 40—60 կիլոգրամ քաշի այծյամ:

Մինչև երեք տարի կարող են առանց սննդի մնալ բժշկական տզրուկները: Կենդանաբուծական կոմբինատի աշխատողները տզրուկների հերթական խումբը դեղատներն ուղարկելուց առաջ նրանց 3—4 ամիս քաղցած են պահում, այլապես սանիտար – արյունախումները կհրաժարվեն մարդկանց բուժել՝ չեն կպչի նրանց մաշկին:

Սնունդ ընդունելու միջև ընկած ժամանակահատվածը երկարաձգելու երկրորդ միջոցը օրգանիզմում պաշարներ ունենալն է: Ամենալավ «վառելանյութը» ճարպն է: Կաթնասունները ճարպը պահում են մաշկի տակ: Ճարպը վատ ջերմահաղորդիչ է, այդ պատճառով էլ նա միաժամանակ և՛ սննդի պաշար է, և՛ «տաք հագուստի» դեր է կատարում, օգնելով նվազեցնել ջերմության վատնումը, ուրեմն, և՝ խնայել «վառելանյութը»:

Շոգ երկրների կենդանիները չեն կարող ճարպ կուտակել մաշկի տակ: Նման «հագուստով» սարսափելի շոգ կլինի: Դրա համար տեղ է հատկացվում մարմնի ծայրամասերում: Ուղտինը սապատն է, ճագարամկները, հսկա մողեսները, ոչխարները ճարպը կուտակում են պոչի մոտ: «Պահեստը» հետը ման տալը ավելի հանգիստ է, քան պաշարները փչակում կամ բներում պահելը: Մեկ էլ տեսար մեկը թռցրեց. ծրի հյուրասիրության սիրահարներ շատ կան:

Մեր մոլորակի կենդա-



նիների ճաշակները զար-
մանալիորեն բազմազան են: Նրանց մեծ մասը սընվում է բուսական սնունդով:

Կենդանական սննդի սիրահարները նախապատվություն են տալիս մանր կենդանիներին: Ցամաքային կենդանիների համար՝ միջատներն են, իսկ ծովայինների համար՝ խեցեմորթները: Վերջինները շատ արագ բազմանում են և մեծ կույտերով խմբվում: Իզուր չէ, որ կապույտ կետերը՝ մեր մոլորակի ամենախոշոր կենդանիները, սնվում են հենց այս խեցեմորթներով: Որպեսզի միջին մեծության կետը իրեն կուշտ զգա, նրա ստամոքսում պետք է մոտ երկու տոննա խեցեմորթ լինի:

Որոշ ձկներ շատ նըրբին ճաշացանկ ունեն: Աֆրիկյան ցիխլիդների որոշ տեսակներ բուսական և կենդանական սընընդից գերադասում են ձկան թեփուկները, իսկ ձուկ, նույնիսկ ամենափոքր, չեն ուտում:

Շատ մողեսներ՝ թըռչողը, պոչավոր դոդոշանմանը, ավստրալիականը, միայն մրջյուններով են սնվում: Այդպես և սողուններից շատերը:

Ճավայական օձը ապրում է Ճավա և Զոնդյան մյուս կղզիների առափնյա շրջանի ջրերում և սնվում է ծովախեցգետիններով: Այդ օձը շատ թունավոր է, սակայն նրա թույնը չի ազդում ո՛չ մարդու, ո՛չ մյուս կաթնասունների, ո՛չ էլ գորտերի ու ձկների վրա, այլ միայն սպանում է ծովախեցգետիններին:

Երկրագնդի վրա քիչ չեն և քաղցրասերները: Շատ միջատներ ու թըռչունների մեկ հինգերորդը սնվում է ծաղկի նեկտարով:

Արևադարձային նեկտարասեր թռչունները ծաղկի հյութը խմում են՝ նստելով ծաղկի կողքին, ծառի ճյուղի վրա: Կոլիբրիները նեկտարը ծծում են հենց թռիչքի ժամանակ:

Անգղն ու պարկարագիլը սնվում են լեշով, բնածին կերպով պաշտպանված լինելով շատ վտանգավոր հիվանդություններից:

Անհամեմատ քիչ են ամենակեր կենդանիները, որոնցից են առնետները, ագռավները, արջնագռավները: Նրանց ամենակերությունը բացատրվում է ստամոքսաղիքային տըրակտում ամենատարբեր սնունդ մարսելու ունակ ֆերմենտների մեծ թվի առկայությամբ: Ինչ խոսք, նրանց ամենակերությունը հարաբերական է: Ագռավը չի կարող սնվել բրդով կամ մոմով: Նման սնունդ մարսելու համար անհրաժեշտ ֆերմենտներ նա չունի:

Ինչքա՜ն կենդանի կա, այնքան էլ ճաշակ ու սովորություն: Դա խոր իմաստ ունի: Միայն ճաշակների տարատեսակությունն է փրկում մեր մոլորակի բնակիչներին դաժան մրցակցությունից ու սովից և թույլ տալիս շրջանառության մեջ դնել մոլորակի բոլոր օրգանական նյութերը:

*ՆԿ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



ՄԵՐ ՀՅՈՒՐԸ

# ՌՈԲԵՐՏ ԱՄԻՐԽԱՆՅԱՆ

«Երբ Սպենդիարյանի անվան երաժշտական դպրոցն ավարտեցի, հայրս հարցրեց՝ տղաս, շարունակելո՞ւ ես երաժշտական կրթությունդ, թե՞ ուզում ես տասնամյակը վերջացնել:

— Ուզում եմ բժիշկ դառնալ,— պատասխանեցի ես:

Որոշումս հաստատ էր: Սակայն մի օր, պատահաբար ձեռքս ընկան «Մոլդավանեսկու» պարեղանակի նոտագրությունները... Կարծես ներսումս մի բան շուռ եկավ: Աշխույժ ռի՞թմն էր, թե՞ ժողովրդական պարզ ու վճիտ մեղեդին... Մինչև հիմա էլ չեմ կարողանում հասկանալ, և հորիցս թաքուն, գործերս հանձնեցի Ռոմանոս Մելիքյանի անվան երաժշտական ուսումնարան...»:

Դպրոցում և ուսումնարանում սովորելիս Ռոբերտը գրում էր երգեր, դաշնամուրային պիեսներ: Սակայն առաջին իսկական երգը գրվեց կոնսերվատորիայի առաջին կուրսում.

— Կոմերիտմիությանը նվիրված երգի մրցույթ էր հայտարարված: Մտածում էի մասնակցել: Ընկերս՝ Տիգրան Մանսուրյանը, որ գիտեր այդ, մի դասամիջոցի մոտեցավ ինձ ու խանդավառված ասաց. «Ռոբերտ, երգիդ համար տեքստ եմ գտել»: Թերթում տպագրված էր Լյուդվիգ Դուրյանի «Երգ ջահելության» բանաստեղծությունը: Կարդացի: Կարծես վաղուց ամեն ինչ պատրաստ էր: Մոտեցա դաշնամուրին ու սկսեցի նվագել: Բոլորը հավանեցին...

Երիտասարդ կոմպոզիտորի այդ երգն արժանացավ առաջին մրցանակի:

Դա սկիզբն էր: Այնուհետև շատ երգեր ծնվեցին: Շատ անգամներ հանրապետական, միութենական մրցույթներում ու փառատոներում պատվավոր մրցանակների արժանացավ: Սակայն ամենալուրջ հաջողությունը, որից հետո երգի ժանրը դարձավ նրա ստեղծագործության հիմնական ուղղությունը, Ալիսիա Կիրակոսյանի խոսքերով գրված երգերի շարքը եղավ:

1973 թ. Բեռլինյան երիտասարդական փառատոնում «Ո՞ւր եք, տղաներ» և 1975 թ. Սոպոտի միջազգային փառատոնում «Աշնանային մեղեդի» երգերը արժանացան մրցանակների:

Ռոբերտ Ամիրխանյանը մեծ հմտությամբ համադրում է ժամանակակից էստրադային երաժշտության հնարանքները մեր ժողովրդական երաժշտության ակունքներից եկող պարզ ու ջերմ մեղեդայնության հետ:

Նա գրել է նաև դաշնամուրային կոնցերտներ, «Աստամնաբույժն արևելյան» մյուզիքլը, երաժշտություն շուրջ երկու տասնյակ մուլտիպլիկացիոն և գեղարվեստական կինոնկարների համար, իսկ Մոլիերի «Քաղքենին ազնվական» կոմեդիայի հիման վրա գրված օպերետը արդեն երկու տարի է, ինչ մեծ հաջողությամբ բեմադրվում է:

1978—1979 թվականներին գրված երգերի շարքի համար Ռոբերտ Ամիրխանյանը արժանացավ ՀամԼԿԵՄ Կենտկոմի մրցանակին:

*Լուսանկարը՝*

*ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ*

# ՈՉ ՄԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆ

(Անգլիական հեքիաթ)

Մի հեռավոր գյուղից ծառան գալիս է քաղաք և այցելում է իր տիրոջ որդուն։

— Ի՞նչ նորություն կա մեր տանը,— ծառային հարցնում է երիտասարդ պարոնը։

— Ոչ մի նորություն, տեր իմ, ոչ մի նորություն,— ասում է ծառան,— միայն ձեր շունը սատկեց։

— Սատկե՞ց։ Խեղճ շուն։ Իսկ ինչի՞ց սատկեց։

— Շատ էր կերել։

— Իսկ կերածն ի՞նչ էր։

— Ձիու միս, տեր իմ։

— Ձիու՞ միս։ Իսկ որտեղի՞ց էր ճարել այդքան ձիու միս։

— Ձեր հոր ձիերի միսն էր կերել, տեր իմ։

— Իմ հոր ձիերի՞։ Ձիե՞րն էլ են սատկել։

— Սատկել են, տեր իմ։

— Ի՞նչից են սատկել։

— Ծանր բեռ տանելիս շատ էին քրտնել։

— Ծանր բեռ տանելի՞ս։ Իսկ ի՞նչ էին տանում։

— Ջուր էին տանում, տեր իմ։

— Ջո՞ւր։ Ինչի՞ էր պետք այդքան ջուրը։

— Հրդեհը հանգցնելու, տեր իմ։

— Հրդեհը հանգցնելո՞ւ։ Իսկ ի՞նչ էր վառվում, գրողը տանի։

— Ձեր հոր տունը, տեր իմ։

— Մեր տունն այրվե՞լ է։

— Այրվել է, տեր իմ։

— Իսկ ինչի՞ց էր բռնկվել։

— Մոմից էր բռնկվել, տեր իմ։

— Մոմի՞ց։ Իսկ որտե՞ղ էր վառվում մոմը։

— Ձեր մոր գլխավերևում, տեր իմ։

— Իմ մոր գլխավերևո՞ւմ։ Ի՞նչ է, իմ մայրը մահացե՞լ է։

— Մահացել է, տեր իմ։ Դժբախտությանը չդիմացավ։

— Ի՞նչ դժբախտություն։

— Ձեր հոր մահվան, տեր իմ։

— Իմ հոր մահվա՞ն։ Հայրս նույնպե՞ս մահացել է։

— Մահացել է, տեր իմ։ Հուսահատությունից։

— Հուսահատությունի՞ց։ Ինչի՞ց է հուսահատվել։

— Ամեն ինչ վաճառել էր և արդեն աղքատության դուռն էր հասել, որովհետև դուք ամեն ինչ մսխում էիք։

— Ախ, ես փտեի, ես ամեն ինչ զգում էի։

— Տեսնո՞ւմ եք, որ ոչ մի նորություն չկա, տեր իմ։ Դուք ամեն ինչ գիտեիք։

*Վերապատմեց*

*ԹԱՄԱՐԱ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆԸ*



# ԳԻՐՔՆ ԱՎԵԼԻ ԼԱՎ Է

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

*Մանրավաճառ էր եկել։ Ամեն առավոտ գյուղի հրապարակում բացում էր իր անհավատալի մեծության ճամպրուկը, միջից զանազան իրեր դուրս հանում, շարում լաթի կտորի վրա, ժըպտադեմ ու պատրաստակամ նայում եկող-գնացողներին։ Սակայն մարդիկ ամեն օր հավաքվում էին ոչ այնքան գնելու, որքան նայելու դուր եկած իրերին, միմյանց նորություններ հաղորդելու և մանրավաճառի հետաքրքիր պատմությունները լսելու։ Ու չնայած ոչ ոք ոչինչ չէր գնում, այնուամենայնիվ նա ամեն օր բացում էր ճամպրուկը, անհամբերությամբ մի ոտքից մյուսին հենվելով, նայում եկող-գնացողներին։*

*Ես էլ էի ամեն օր գնում, որովհետև շատ էր դուրս եկել գույնզգույն նկարներով գիրքը, որն արժեր քսանհինգ ձու կամ տասը ռուբլի։ Չնայած քսանհինգ ձուն և տաս ռուբլին հավասարաչափ անհասանելի էին, բայց ես հաստատ որոշել էի գնել։ Եվ գիշերներն անընդհատ*

հորանջում ու հառաչում էի, կտրելով տատիս քունը։

Մի քանի օր մեր այգու հեռավոր անկյունի ծառի տակը փորփրելուց (որի տակ պետք է որ գանձ պահված լիներ) և շրջակայքի հավերին աչալրջաբար հետևելուց հետո, համոզվեցի, որ հարկավոր է ավելի գործնական միջոցների դիմել, որովհետև նույն ճանապարհով էին գնում նաև մորեղբայրս և գյուղի մյուս տղաները։ Դրա համար էլ հավաբները միշտ դատարկ էին լինում։

— Ինչու՞ չվաճառենք մեր կովի կաթը...— ասացի տատիս,— ուրիշները վաճառում են, իսկ մենք միայն ինքներս ենք խմում։— Եվ սկսեցի հաշվել, թե ինչքան փող կունենանք մի ամսվա ընթացքում, եթե մի քիչ նեղություն տանք մեզ։

— Կովը մեզ համար եմ պահում, ոչ թե ուրիշների,— առարկություն չվերցնող տոնով ասաց տատս։

— Այդ փողին ուրիշ բաներ կառնենք,— պնդեցի ես,— հո չի՞ կարելի անընդհատ կաթ խմել։— Եվ նորից սկսեցի բացատրել այդ ձեռնարկության օգուտները, մինչև տատս համաձայնեց։

Երեկոյան մածուն մերեցինք, որպեսզի առավոտյան տանեմ կայարան։ Երբ մարդատար գնացքները կանգ էին առնում, ուղևորներն իջնում էին միրգ, կաթ, մածուն, հաց գնելու։

— Հինգ ռուբլին ինձ...— ասացի տատիս։

—Ինչու՞...— հարցրեց տատս,— արածդ հինգ ռուբլու գո՞րծ է։

— Պետք է,— ասացի ես։

— Հինգ ռուբլի՞ է պետք,— ծիծաղեց տատս։

— Չէ՛, շատ,— ասացի ես,— բայց ավելին վերցնել չեմ կարող, այդպես անազնիվ կլինի։

— Լավ,— ասաց տատս,— միայն թե տես, շատ չուշանաս, թե չէ կանհանգստանանք։

Ես ուսեցի խուրջինն ու գնացի կայարան։ Հակառակի նման շատ մարդիկ կային և բոլորը ցանկանում էին մանրավաճառից ինչ-որ բան գնել։

Մինչև ճաշ մի քանի գնացք անցավ։ Ուղևորներն իջնում էին, քայլում մայթերին դրված մրգերով լի դույլերի առջևից, վերցնում, շուռ ու մուռ տալիս, բայց հազվադեպ էին ինչ-որ բան գընում։ Այնուամենայնիվ մինչև ճաշ չորս ռուբլու վաճառեցի։ Եթե մնացածը չըվաճառեի, ստիպված էի լինելու շալակել ու նորից ետ տանել։ Այդպես էլ եղավ։ Հոգնել էի։ Սաստիկ քաղց էի ըզգում։ Իսկ գյուղ տանող ճանապարհն անցնում էր քարափներով և խուրջինը կախվում, կպչում էր ոտքերիս։

— Ինչպես տեսնում եմ, գլուխ չեկավ առևտուրդ,— ծիծաղեց տատս։

— Վաղն էլ չորս՝ կլինի ութ,— ասացի ես, առանց ծամելու կուլ տալով հաց ու պանիրը։

— Ի՞նչ ես անելու,— հարցրեց պապս։

— Գիրք եմ առնելու...

— Գրքի համար կարելի է, ամբողջը քեզ վերցրու ու մեկ էլ չլսեմ, որ խուրջինը շալակել, կայարան ես իջել։ Քեզնից առևտրական դուրս չի գա։

Ես գիտեի, որ համոզելն իզուր է և լռեցի։ Երբ մորեղբորս հետ դուրս եկանք տնից, հարցրեց.

— Ինչքա՞ն փող ունես...

— Իբր թե չգիտես...—ծուռ-ծուռ նայեցի ես։

— Գիրքն արժի տասը ռուբլի։

— Կխնդրեմ, չորս ռուբլով կտա։

— Չի տա,— հաստատուն ձայնով ասաց մորեղբայրս, և ես համոզվեցի, որ չի տա։

— Տեսնես ի՛նչ դանակ է վաճառում...— շարունակեց մորեղբայրս։

— Գնա գողացած ձվերո՛վդ առ,— ջղայնացա ես, նորից հիշելով, որ նա միշտ ինձնից առաջ է ընկնում ու միշտ հավաբները դատարկ են լինում։

— Չի բավականացնում,— ասաց մորեղբայրս,— իսկ եթե քո չորս ռուբլին տաս, կգնեմ։

Եվ մորեղբայրս սկսեց բացատրել դանակի առավելությունը գրքի նկատմամբ ու վերջապես համոզեց։

— Միևնույնն է, տասը ռուբլի չեմ կարող հավաքել,— արցունքներս հազիվ զսպելով ասացի ես,— իսկ չորս ռուբլով չի տա,— և նրան մեկնեցի ափիս մեջ սեղմած ռուբլիանոցները։

— Ճիշտ է, չի տա,— ծիծաղելով ասաց մորեղբայրս և վերցնելով անհետացավ մթության մեջ։

Ու մինչև հեռանալն անընդհատ ծիծաղում էր։

Գիշերն ուշ վերադարձավ։ Այդպես էլ սպասելով, քնել էի։

Իսկ առավոտյան, երբ արթնացա, տեսա բարձիս տակ դրված գիրքը։ Աչքերիս չէի հավատում։

— Մտածեցի, որ գիրքն ավելի լավ է, քան դանակը,— հորանջելով ասաց մորեղբայրս,— գեղեցիկ նկարներ կան... Եվ չի կորչի։ Իսկ դանակը, միևնույն է, մի օր պիտի կորցնեի։

Ես զարմացած նրան էի նայում, որովհետև այդ պահին նա նկարազարդ գրքից էլ լավն էր։

Ու որոշեցի, երբ մեծանամ, շատ փող ունենամ, անպայման նրա համար դանակ եմ առնելու, մեծ, փայլուն, թրի նման սուր... ճիշտ մանրավաճառի դանակի պես։



Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ




# ԿԵՂԾԱՆՈՒՆՆԵՐԻ

●

Շատ շատերի իսկական անուն-ազգանունները մոռացվել են, իսկ կեղծանունները ապրում են ու կապրեն: Եղիշե Սողոմոնյանը՝ որպես Եղիշե Չարենց, Պարույր Ղազարյանը՝ որպես Պարույր Սևակ, Իվան Լուցևիչը՝ որպես Յանկա Կուպալա, Ալեքսանդր Մովսիսյանը՝ որպես Շիրվանզադե, Յակ Տիբոն՝ որպես Անատոլ Ֆրանս, Հակոբ Մելիք-Հակոբյանը՝ որպես Րաֆֆի, Սոլոմոն Ռաբինովիչը՝ որպես Շոլոմ Ալեյխեմ, Կարլեն Մուրադյանը՝ որպես Գևորգ Էմին, Պոկլեն Ժան Բատիստը՝ որպես Մոլիեր, Ավրորա Դյուպենը՝ (ամուսնու ազգանունով Դյուդևան) որպես Ժորժ Սանդ, Դանիել Չեքուկարյանը՝ որպես Դանիել Վարուժան, Արկադի Գոլիկովը՝ որպես Արկադի Գայդար, Էժեն Գրենդելը՝ որպես Պոլ Էլյուար, Ալեքսանդր Պոպովը՝ որպես Սերաֆիմովիչ, Ատոմ Յարճանյանը՝ Սիամանթո և այլն:

●

Չիլիացի աշակերտ Նեֆտալի Ռեյեսի հայրը խիստ մարդ էր և հավանություն չէր տալիս իր տղայի գրական առաջին քայլերին: Տղան թաքնվեց Պաբլո Ներուդա կեղծանվան տակ և այդ անունով էլ աշխարհահռչակ դարձավ: Իսկ ինչո՞ւ Ներուդա: Նեֆտալի Ռեյեսը չեխ գրող Յան Ներուդայի երկրպագուներից էր և նրա ազգանունն էլ վերցրեց որպես կեղծանուն:

●

Մի շարք աշխարհահռչակ գրողներ և բանաստեղծներ իրենց ստեղծագործությունները երիտասարդ հասակում ստորագրում էին կեղծանուններով: 15—16 տարեկան Ալեքսանդր Պուշկինին են պատկանում Ն. Կ. Ա. Պ., կամ Պ., կամ 1.14—16 կեղծանունները, 20 տարեկան Գոգոլը հրատարակվեց Վ. Ալով կեղծանունով, 19 տարեկան Տոլստոյը իր «Մանկությունը» ստորագրեց Լ. Ն. ըսկըզբնատառերով: Մայակովսկուն են պատկանում Կոնստանդին, Յուգով, Վ. Վլադիմիրով կեղծանունները, Եսենինին՝ Մետեոր կամ Արիոստո... Չարլզ Դիկկենսը իր առաջին ակնարկները հրատարակում էր Բոզ կեղծանունով, Հերբերտ Ուելսը՝ Ս. Վ. տառերով, Գոլսուորսին՝ Ջոն Սինջոն անունով, Բալզակը՝ լորդ Ռոոն, Մոպասանը՝ Ժոզեֆ Պոյունյե, կամ Գի Դե Վիլմոն:

●

Հանրի Բեյլի հիմնական կեղծանունը, ինչպես հայտնի է՝ Ստենդալ է, բայց քչերը գիտեն, որ ֆրանսիացի այդ հայտնի գրողը կեղծանունների յուրահատուկ ռեկորդսմեն է: Կոտոնե, Լիզիո, Սալվիատի, Վիսկոնտինի և այն, և այլն: Նրա կեղծանունների թիվը հասնում է 220-ի:

Վոլտերը նույնպես սիրում էր կեղծանունները, որոնք հասնում են 160-ի: Նրանց մեջ ռուսական ազգանուններ կային, օրինակ՝ Շերեմետև, Պլոխով, Իվան Սվետլով և այլն:

# ՄԱՍԻՆ

●

Անտոն Չեխովը սիրում էր զանազան զվարճալի կեղծանուններ, ինչպես օրինակ՝ «առանց հանախորդի բժիշկը», «Ակակի Տարանտուլով», «առանց փայծաղի մարդը», «Պալկա № 6» և այլն:

●

Երկու եղբայրներ, հայ պոետներ Տեր-Գրիգորյանները կեղծանունների շնորհիվ դարձան մեկը՝ Տերյան, մյուսը՝ Ջավախեցի:

●

1880 թվականին երիտասարդ Միքայել Հովհաննիսյանը «Նոր դար» հանդեսին ներկայացրեց իր առաջին վեպի՝ «Նունե»-ի ձեռագիրը:

— Անհրաժեշտ է կեղծանուն, առանց դրան չի կարելի,— ասացին խմբագրատանը:

Քարտուղարը վերցրեց բառարանը և սկսեց կարդալ բառերը: Կանգ առավ նարդոս բառի վրա.

— Եթե այս բառը մի գծիկով բաժանենք երկու մասի, ավելի լավ կլինի,— ասաց քարտուղարը:

Հովհաննիսյանը համաձայնեց և այսպիսով ծնվեց գրական մի նոր անուն՝ Նար-Դոսը:

●

Այն հարցին, թե ո՞վ է Հովհաննես Տեր-Առաքելյանը, շատ քչերը կարող են պատասխանել, բայց չէ՞ որ հայտնի հայ գրող Պերճ Պռոշյանի իսկական անուն-ազգանունն է այդ:

●

Հարություն Սայադյանը ապրում է և կապրի իր Սայաթ-Նովա կեղծանունով:

●

Հովհաննես Կարապետյանը վերցրեց այն քաղաքի անունը, որտեղ ծնվել էին հնադարյան պոետներ Սաադին և Հաֆիզը, և դարձավ Շիրազ: Կարապետյանը մոռացվեց, Շիրազը մնաց:

●

Հունգարացի պոետ Յանոշ Արանը թարգմանեց Գոգոլի «Շինելը» և այնքան սիրեց Ակակի Ակակիևիչին, որ այդ կեղծանունով սկսեց ստորագրել իր բանաստեղծագործությունները:

●

Ժամանակակից ֆրանսիացի գրող Անրի Թրուայան Մոսկվայում ծնված Լևոն Թորոսյանն է, իսկ անգլիացի գրող Մայքլ Առլենը՝ Տիգրան Գույումճյանը:



ՎԱՍԻԼ ԻՆՋԵՎ

# ԱՆԽՈՍ ԹԱՏՐՈՆԻ





Մնջախաղ հասկացողությունը առաջացել է հունական «պանտոմիմա» բառից, որը նշանակում է «ամեն ինչ ընդօրինակող»: Այդ արվեստը ծնունդ է առել հին ժամանակներում և ապրում է մինչև օրս: Ահա թե ինչպես է բնութագրում այն ֆրանսիացի հանրահայտ միմոս Մարսել Մարսոն.

«... Մենք ցույց ենք տալիս այն, ինչն ամենից լավ արտահայտվում է լռությամբ: Օրինակ, խոսքերով դժվար է հաղորդել, թե ինչպես է մարդը գնում քամուն ընդառաջ, իսկ միմոսին այդ տեսարանը ներարկվում է առանց դժվարության, նա բեմում, կարծես, քամի է ստեղծում: Խոսքով հնարավոր չէ ցույց տալ աստիճաններով բարձրացող մարդուն: Իսկ միմոսը ի վիճակի է այդ անել և նրան ամենևին էլ աստիճան հարկավոր չէ... Միմոսը մի ակնթարթում կարող է ցույց տալ մարդկային մի կյանք: Դա կարելի է անել միայն առանց խոսքի: Մնջախաղն ընդունակ է մարդու անցած ամբողջ ճանապարհը վերարտադրել հոգեվիճակն արտահայտող սիմվոլների, անձայն նիշերի օգնությամբ, և այդ ամենն անում է ավելի լավ, քան ես այժմ կանեի խոսքերով: Ինձ թվում է, միմոսի ստեղծած շարժումների պոեզիան նման է երաժշտության, քանի որ նրա լուռ կերպարները մարդու սիրտը շարժում են այնպես, ինչպես երաժշտական հնչյունները»:

Մնջախաղի հիմնական սկզբունքները չափազանց կենսունակ դուրս եկան: Սովորաբար այս կամ այն տեսարանի առանցքը դառնում է իր մեջ դրամատիկական կամ կատակերգական տարր պարունակող իրադարձությունը կամ դեպքը: Դերասանը դրանք բացահայտում է անխոս կերպարի, պլաստիկ գործողությունների օգնությամբ, միակ արտահայտչամիջոցը նրա մարմինն է, շարժումները, կեցվածքը, ժեստերը, միմիկան: Դրա համար էլ այդ դերասաններին անվանում են միմոսներ:

Մնջախաղի սկզբունքները եղել են նաև մեր հնագույն թատերական տեսարանների և ծիսակատարումների ժամա-

# ՊԵՐՃԱԽՈՍՈՒԹՅՈՒՆԸ

նակ։ Դրանք հայտնի են եղել բոլոր ժողովուրդներին՝ դեռևս նրանց զարգացման նախնադարյան շրջանում։ Սակայն մնջախաղը իսկական արվեստ դարձավ մեր թվարկության 5-րդ դարից, երբ հին Հելլադայի հույների պլաստիկայի կուլտուրան թատերական բոլոր ներկայացումները հանգեցրեց պարի և մնջախաղի։ Այդ ժամանակներին է վերագրվում նաև «պլիբսա» (ժողովրդական թատրոնի) երևան գալը։ Աթենքի մերձակայքերում կառուցված բեմերի վրա ելույթ էին ունենում երգիչներ, ակրոբատներ, երաժիշտներ, պարողներ, կենդանիներ սանձահարողներ և, իհարկե, միմոսներ։ Աղմկող բազմությամբ շրջապատված դերասանները ստեղծում էին իրենց անխոս արվեստը, այնքան արտահայտիչ, այնքան հասկանալի ու մատչելի, որ այն անվանում էին «մարդկային ձեռքերի խոսակցություն»։

Ահա թե ինչպես է նկարագրում մնջախաղը հին պատմագիր Քսենոֆոնը. «Լռեցին ծիսական և հարսանեկան հիմները, և թրակիացիները վեր կացան խնջույքի սեղանից։ Ֆլեյտայի ձայների ներքո սկսվեց նրանց սրերով պարը, մինչև պարողներից մեկը ընկավ հակառակորդի սրի հարվածից։ Այդ ժամանակ հաղթողը վերցրեց նրա զենքը և Սիտալեքի պատվին մի երգ ասաց։ Մեռածին տարան։ Իրականում նրան ոչ մի ճերծված չէին պատճառել»։

Հռոմեական կայսրության ղեկավար վերնախավը նոր ներկայացումներ և խաղեր կազմակերպելու միջոցով վարպետորեն շեղում էր ժողովրդական զանգվածների ուշադրությունը։ Ահա թե Կասպադորը ինչպես է նկարագրում թատերական ներկայացումներից մեկը. «Միևնույն մարդը խաղում է և՛ Հերկուլեսի, և՛ Վեներայի, տիրակալի և հասարակ զինվորի, տղամարդու և կնոջ, պատանու և ծերունի դերեր։ Սակայն պատրանքն այնքան մեծ է, որ այդ բոլոր հերոսներին տեսնելով, մոռանում ես, որ այդ դերերը կատարում է միայն մեկ դերասան։ Նա նման վերամարմնավորման է հասնում միայն ժեստերի,









միմիկայի, շարժումների օգնությամբ»:

Հռոմում տաղանդավոր միմոսներին արժանացնում էին մեծարանքների: Կայսրների հուշարձանների կողքին նրանց պատվին ևս հուշարձաններ էին կանգնեցնում:

Հետագայում մնջախաղը անկման և բուռն ծաղկման շրջաններ ապրեց: Այդ հին արվեստը հարստացրին հանրահայտ դերասաններից շատերը: Դրանց թվում անգլիացի դերասաններ Ջոզեֆ Գրիմալդին և Չարլի Չապլինը, ֆրանսիացիներ Ժ. Բ. Դեբյուրոն, Դերկուն, Ժան Լուի Բարոն: Մնջախաղի զարգացման համար շատ բան արեցին սովետական ռեժիսորներ Վ. Է. Մեյերխոլդը, Ա. Յու. Թաիրովը, Ն. Ն. Եվրեինովը: Մեր օրերին բացարձակ հաջողություն ունեն ֆրանսիացի Մարսել Մարսոն, չեխ Յադիսլավ Ֆիալկան, լեհ Հենրիխ Տամաշևսկին, շվեյցարացի Դմիտրին, ավստրիացի Սամի Մոլխոն...

Բուլղարացիները ևս կարող են հպարտանալ միմոսների իրենց արժանի ներկայացուցիչներով: «Ալգա ի սմյախ» («Արցունք և ծիծաղ») թատրոնին կից «Պանտոմիմա» ստուդիայի դերասան Վելո Գորանով: Նրման մասնանյուղեր են ստեղծվել «Սոֆիա», Սլիվենի դրամատիկական, Շումենի տիկնիկային թատրոններին կից, ինչպես նաև շատ բանվորական, ուսանողական և դրամատիկական ինքնագործ գեղարվեստական խմբերում:

*Թարգմ.*
*ԱՐԱՄ ՄԵԼՔՈՆՅԱՆԻ*







# Մեր պապերը

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

Մի իրիկուն տատիկները բացեցին սեղան,
Պապիկները գինովցան ու հարբեցին, ջա՜ն:

Երգում էին ողջ գիշերը, հոյ-հո՜յ, երգն անուշ,
Երգում էին, մեզ ծնկներին օրորում անուշ:

Ու երբ եկավ առավոտը, մտավ տունը մեր,
Մեր տաքացած պապերն արդեն պար էին բռնել:

Միջօրեի արևը երբ զգույշ նայեց վար,
Պապերի տեղ փոքրերս էինք բռնել խրոխտ պար:

Չէ, բան չկար առանձնապես... ու նրանք լռել
Մի.երջանիկ երազի մեջ «տուն» էին թռել:

Վշվշում են տատիկները, աղոթք փսփսում,
Երեկ ծնված թոռներն այսօր քայլում են, խոսում:

Չէ, բան չկար առանձնապես, մենք ելել ոտի,
Փորձում էինք ճամփան գտնել կորած հեքիաթի:

Նկ. ՆԻԿՈՂԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ






ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 1 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981



Շապիկի առաջին էջը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր)։

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 04905. Պատվեր Տպաքանակ 61244։ Տպ. 3 մամ.։ Թուղթ՝ 70×100 1/16, Հանձնված է արտադրության 11/XI-80 թ. Ստորագրված է տպագրության 30/XII-80 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. 2








## ԳԱՂՏՆԱԳԻՐ «ՆՈՐ ՏԱՐԻ»

Գծագրի կենտրոնում գտնվող ժամացույցի թըվերի շուրջը դասավորված են 12 համաստեղությունների պատկերներ։

Գծագիրը երիզող շրջանակներում տեղադրել թվերին համապատասխանող տառերը (համարիչը ցույց է տալիս, թե որ համաստեղության, իսկ հայտարարը՝ որ տառը պետք է վերցնել)։

Ճիշտ լրացնելուց հետո կարդացեք Ձմեռ պապի նոր տարվա ողջույնը։




## ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐ

1, 9, 8, 1, թվերի միջև կան ձյան փաթիլներ, փաթիլների տեղը տեղադրեք թվաբանական նշաններ այնպես, որ ստացվի թվաբանական գործողություն։




Կազմեց
ՅՈՒԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԸ

## № 11 ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ № 11

### ԳԱՂՏՆԱԳԻՐ «ՀԱՅԱՍՏԱՆ»

1. «ՀԱՅԱՍՏԱՆ»։ 2. ԹԱՄԱՆՅԱՆ։ 3. ԻՋԵՎԱՆ։ 4. ՄԵՂԱԳԱՐՏ։ 5. ՆԱՐԵԿԱՑԻ։ 6. ՂՈՒԿԱՍՅԱՆ։ 7. ՍԵՎԱԿ։ 8. ՇԱՀԻՆՅԱՆ։ 9. «ՎԱՐԴԸ»։ 10. ՎԱՆԱՁՈՐ։ 11. ԻՍԱՀԱԿՅԱՆ։ 12. ՌՈՔՈՒԵԼ ՔԵՆՏ։

### ԳԱՂՏՆԱԳՐԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ՝

«Եթե ինձ հարցնեն, թե մեր մոլորակի վրա որտեղ ավելի շատ հրաշքներ կարող են հանդիպել, ես առաջին հերթին կտամ Հայաստանի անունը»։

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ԵՐԵԽԱՆԵՐԸ

ԱԿՍԵԼ ՈՍԿԱՆՅԱՆ, 5տ., Երևան



ԵՐԱՆՈՒՀԻ ՎԱՐԴԱՆՅԱՆ, 8տ., Լենինական



ԱՐՄԵՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, 9տ., Լենինական





ԿԱՐԻՆԵ ՊՈՂՈՍՅԱՆ, 9տ., Երևան